


ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Հավաքել ենք մեր բոլոր
խաղալիքներն՝ ինչքան կան.
Ավտոները հին ու նոր,
Վագոններ ու շոգեքարշ.
Շարել իրար ետևից,
Կազմել գնացք մի հսկա.
— Ով գալիս է՝ պատրաստվի՛,
Շարժվելու ենք հիմա:

— Ո՞ւր ես գնում դու, Հրա՛նտ:
— Թուրքմենական մեծ ջրանցք.
Այդ հեռավոր ջրանցքին
Ես տանում եմ բանկազին
Մեքենաներ, դազգահներ,
Ավտոների շատ մասեր,
Լարեր ամեն հաստության,
Ավտոդողեր զանազան:

— Իսկ դո՞ւք, Հասմիկ ու Մուշեղ:
— Ստալինգրադ ու Կույբիշև.
Կայաններին այդ հզոր
Ահա տանում ենք այսօր

Քարերը մեր անհամար
Ե՛վ գրանիտ, և՛ մարմար,
Ե՛վ մեր տուֆը բազմերանգ՝
Հայաստանի գանձը թանկ:

— Իսկ դո՞ւ ուրտեղ, ա՛յ Անտոն:
— Ես գնում եմ Վոլգա–Դոն.
Բանվորներին այնտեղի
Ես տանում եմ մեր հողի
Բարիքները անսահման,
Մեր մրգերը քաղցրահամ,
Ե՛վ դեղձ, և՛ տանձ, և՛ խնձոր,
Եվ թե խաղող մեղրածոր...

«Զը՛նգ» զնգում է զանգը մեր,
«Տուտո՛ւ» գնացքն է սուլում,
Մենք շարժվում ենք արդեն,
Արդեն առաջ ենք սուրում.
Շտապում ենք անհամբեր,
Ուրախ-զվարթ ձայն տալիս՝
— Ճամփա տվե՛ք, ընկերնե՛ր,
Հայաստանից ենք գալիս...






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 4

ԱՊՐԻԼ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

К БОРЬБЕ ЗА ДЕЛО ЛЕНИНА—СТАЛИНА

*Երևանի Պռոշյանի անվան դպրոցի 7-րդ «ա» դասարանի աշակերտուհի, դրուժինայի խորհրդի նախագահ Անահիտ Խիզարչյանին լուսանկարել են դրուժինայի բացված դրոշի առջև գերազանց ուսման և պիոներական լավագույն աշխատանքի համար։*

*Ֆոտո Հ. ՀԵՔԻՔՅԱՆԻ*



# Մեծ Լենինի մասին

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Երբ որ արևը շողերով պայծառ
Ոսկեզօծել էր դաշտեր ու անտառ,
Երբ որ ամենուր ձյունն էր չքացել,
Բուքը դադարել, սառույցը հալվել,
Երբ կարկաչահոս առվակի ափին
Կապտին էր տալիս մանուշակ նրբին,
Երբ որ ծառերը արդեն զարդարվել՝
Սպիտակ, վարդագույն շոր էին հագել,
Երբ վերադարձած հավքերը սիրուն
Դալար ճյուղերում բույն էին հյուսում,
Հանկարծ արևը փայլեց, փայլփլեց
Եվ ուժգին գոչեց.
— Բոլորդ իմացե՞ք,
Որ երկրագնդում լույս մանուկ ծնվեց։
Եկեք, մենք նրան՝ այդ լույս մանուկին,
Մեր նվերը տանք, նվեր թանկագին։
Արևն իր ցոլքը տվեց շողշողուն,
Որ մանուկը պայծառ լինի, իմաստուն։
Աղբյուրը իր ձայնը տվեց կարկաչուն՝
Մանկան խոսքն ազդու լինի ու սահուն։
Ծաղկունքն իրենց հոտը տվին հաճելի,
Որ մանուկը լինի խոհեմ, սիրելի։
Սեգ արծիվն էլ նվեր տվեց՝ զույգ թևեր՝
Տղան լինի համարձակ ու անվեհեր։
Կեռներն իրենց հիմքը տվին անսասան,
Որ մանուկը կյանք ունենա հավիտյան...
Ու մեծացավ այդ լույս տղան իմաստուն,
Տվեց երկրին ազատություն, խնդություն։

Եվ նա դարձավ աշխատավոր,
Ազնիվ մարդկանց ղեկավար,
Ողջ աշխարհում հավերժական
Խաղաղության նավավար։
Եվ կատարած իր գործերի համար նա
Կապրի հավետ ու երբեք չի մահանա։



# Առաջին նամակը

Խ. ՀԱՍԻԼՈՎԱ

Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ

*Փոստատարը շատ հաճախ էր այցելում այն բակը, որտեղ ապրում էր տասը տարեկան Սոլմազը։ Նա բարձրանում էր վերին հարկերը, ծեծում դռները և հեռու վայրերից եկած նամակները հանձնում հասցեատերերին։ Սոլմազն էլ էր ուզում, որ իրեն նամակ ուղարկեին։ Բայց ոչ ոք նրան նամակ չէր գրում։ Դե նա շատ փոքրիկ էր, հազիվ էր լրացել նրա տասը տարին...*

*Մի օր փոստատարը նորից նրանց բակը եկավ։ Երեխաները խումբ-խումբ խաղում էին։ Միջահասակ, սևահեր փոստատարը՝ թևի տակ բազմաթիվ թերթեր և պայուսակի մեջ՝ նամակներ ու ամսագրեր, նայելով ձեռքում պահած նամակին, հայացքը պտտեցրեց բակում։ Սոլմազը ընկերներից բաժանվելով, մոտեցավ փոստատարին.*

*— Քեռի՛, դուք ո՞մ տունն եք փնտրում։*

*— Մասմա Ռասուլովայի տունը, ճանաչո՞ւմ ես,— հարցրեց փոստատարը։*

*— Այո, քեռի՛, ճանաչում եմ։ Դուք նրա՞նց եք նամակ բերել։*

*Փոստատարն ասաց.*

*— Այո, նամակ ունեն։ Նրանց տունն ինձ ցույց տուր։*

*Սոլմազը փոստատարի հետ միասին բարձրացավ երրորդ հարկ։ Նրանք կանգ առան վեցերորդ սենյակի մոտ։ Սոլմազը ծեծեց դուռը։ Սենյակի ներսից լսվեց Մասմա խալայի*) ձայնը.*

*) *Խալա—ադրբեջաներեն մորաքույր։*

— Ո՞վ է։

— Ես եմ, Սոլմազը։ Փոստատարը նամակ է բերել։

Մասմա խալան ասաց.

— Ներս եկեք։

Սոլմազն ու փոստատարը սենյակ մըտան։ Մասմա խալան պառկած էր մահճակալի վրա։ Սոլմազը հարցրեց.

— Մասմա խալա՛, ձեզ ի՞նչ է պատահել, հիվանդացե՞լ եք։

— Այո, աղջի՛կս, մրսել եմ։ Երկու օր է, որ աշխատանքի չեմ գնում։

Նամակը հանձնելուց հետո փոստատարը գնաց, իսկ Սոլմազը մնաց Մասմա խալայի մոտ։

Մասմա խալայի ուսուցչուհի աղջիկը՝ Գյուլնազը և թոռնիկը՝ էլդարը, հանգստանում էին Գյոյ-Գյոլի ամառանոցում։ Նամակն էլ հենց նրանցից էր ստացվել։ Հիմա Մասմա խալան տանը մենակ էր մնացել։ Ինքն էլ հիվանդ էր։ Մասմա խալան նստելով տեղում, փորձեց կարդալ նամակը։ Սոլմազը շտապեց ուղղել նրա բարձը։

Մասմա խալան սկսեց կարդալ նամակը։ Սոլմազը նկատեց, որ մահճակալի մոտ, փոքրիկ սեղանի վրա դարսված մնացել են անլվա ափսեները։ Նա շտապով վերցրեց դրանք և խոհանոց տարավ։ Լվանալուց հետո նա դարսեց պահարանում։ Հետո վերադառնալով, վերցրեց փոքրիկ սփռոցը, որ թափ տա, և նկատեց թղթի մի կտոր։ Թղթի ձևից նա հասկացավ, որ դա դեղատոմս է։ Մի ժամ առաջ իրեն լավ ծանոթ ռայոնական բժշկի այս բակը գալու նպատակը նա միայն այժմ հասկացավ։

Մասմա խալան նամակի ընթերցումը վերջացնելուց հետո դեմքը դարձրեց Սոլմազի կողմը և ասաց.

— Ողջ առողջ են։ Ես էլ անհանգստանում էի։

Սոլմազը դեղատոմսը վերցնելով, ասաց.

— Մասմա խալա՛, դեղատնից դեղը գնա՞մ բերեմ։

Մասմա խալան սկզբում չհամաձայնեց։ Նա չէր ուզում փոքրիկ Սոլմազին անհանգստություն պատճառել։ Բայց աղջկա խնդրանքին զիջելով, ասաց.

— Դե, լավ. միայն թե մայրիկիդ ասա, հետո գնա։ Ճանապարհին զգույշ եղիր։

Երկու ժամ հետո Սոլմազը բերեց Մասմա խալայի դեղերը։ Մասմա խալան նրա փոքրիկ թաթիկը համբուրելով, սեղմեց կրծքին։

Մի շաբաթից ավելի էր, որ բակի երեխաները Սոլմազին շատ քիչ էին տեսնում։ Դեղ, կաթ, մածուն կամ ուրիշ բաներ գնելու համար բակ դուրս եկած աղջկան հարցնում էին.

— Սոլմա՛զ, ո՞ւր ես գնում, արի խաղանք։

Սոլմազը պատասխանում էր.

— Ես գործ ունեմ. խաղալու ժամանակ չունեմ։



Բայց այսօրվանից նա էլի խառնվել է բակի երեխաներին ու խաղում է։ Մասմա խալան արդեն առողջացել է։ Նա աշխատանքի է գնացել։

*
* *

Երեխաների խաղի աղմուկը տարածվել է ամեն կողմ։

Պայուսակի մեջ լիքը նամակներ ու թերթեր, փոստատարը նորից եկել է այս բակը։ Փոքրիկ երեխաները նրան ընդառաջ վազելով հարցրին.

— Քեռի՛, մենք նամակ ունե՞նք։

— Մենք էլ ունե՞նք։

— Ռուստամովին նամակ կա՞։

Իսկ Սոլմազը լուռ կանգնել նայում էր։ Փոստատարը պայուսակից մի ծրար հանեց և ասաց.

— Այս բակում ո՞վ է Սոլմազ Ջալիլովան։

Երեխաները զարմանքով նայեցին Սոլմազին։ Սոլմազը շփոթվեց։ Փոստատարը տեսնելով երեխաների լռությունը, նորից հարցրեց.

— Դե, ձեր բակում Ջալիլովա ազգանունով մարդ չկա՞։

Աղջիկներից մեկը ամոթխած ասաց.

— Այո, կա։

— Ո՞վ է։



Երեխաները այս խոսքից կարծես միանգամից սթափվեցին։ Նրանք մի կողմ քաշվեցին. Սոլմազը մնաց կենտրոնում կանգնած։

— Տեսեք, այս աղջիկն է։

Փոստատարն ակնոցների տակից ուշադիր նայեց Սոլմազին և միանգամից ծիծաղեց։

— Ահա թե ի՞նչ. այդպես ասացեք էլի։

Երեխաները բարձր ծիծաղեցին։ Սոլմազն ավելի շփոթվեց։ Փոստատարը մոտենալով հանեց տետրն ու մատիտի հետ պարզելով նրան ասաց.

— Ստորագրիր ու նամակդ ստացիր։

Սոլմազը մատիտը վերցրեց և ստորագրեց։ Փոստատարը նամակը տալով ասաց.

— Կարդա, տես ի՞նչ են գրում։

Սոլմազը նամակը վերցրեց և պահեց տանը կարդալու համար։ Բայց երեխաները բոլորը միանգամից ասացին.

— Բաց արա, կարդանք, բաց արա կարդանք։

Սոլմազը պատրաստվեց նամակը կարդալու։ Հավաքված երեխաների գլուխները թեքվեցին նամակի վրա։ Սոլմազն սկսեց բարձր կարդալ մեծ-մեծ տառերով գրված նամակը։

Նամակն ուղարկել էր Մասմա խալայի ուսուցչուհի աղջիկը՝ Գյուլնազը։ Նա Սոլմազին շնորհակալություն էր հայտնում հիվանդ մորը ցույց տված խնամքի և ուշադրության համար։

Սոլմազը նամակը կարդաց, վերջացրեց։ Երեխաները նրան սկսեցին գովել։ Սոլմազը երջանիկ էր։ Չէ՞ որ դա նրա անունով ստացված առաջին նամակն էր։

Ադրբեջաներենից թարգմ. Շ. ՍԱՖՅԱՆ

---

Մ. ԿՈՐՅՈՒՆ

## ՄԵՆՔ ՊԻՈՆԵՐՆԵՐ ԵՆՔ

Մենք պիոներներ ենք կյանքով, հույզով լի,
Փոխարինողն ենք մենք կոմսոմոլի,
Նա մեր հարազատ եղբայրն է ավագ,
Անում ենք նրա հզոր թևի տակ:
Հայրենի երկրի հետախույզն ենք մենք,
Սիրում ենք մեր հողն ու լեռները սեգ,
Սիրում ենք զարնան արեգակը ջինջ,
Ամառը մեր շոգ, այրող ու կիզիչ,
Աշունը հարուստ բաղցրահամ մրգով,
Ձմեռն հողմերի անհարկու երգով:
Եվ մեր անցյալն ենք սիրում փառավոր,
Եվ ներկան մեր վեհ և գալիքն հզոր,
Ի՞նչպես չսիրենք մենք քեզ, Հայրենի՛ք,
Կառուցումների դու բերդ անառիկ,
Լենինյան լույսով լցված ծայրեծայր
Դու խաղաղության փարոսն ես պայծառ:



# Լենին

ՌԱՍՈՒԼ ՌԶԱ

*(Ստալինյան մրցանակի լաուրեատ)*

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Տարիներ են անցել, մինչև
Դարն է հասել տասնհիններորդ...
Յոթանասուն թվականի
Օրն է հասել այն լուսահորդ:
Այդ օրը մայր Վոլգայի մոտ,
Որ խաղաղ է, խորունկ ու հորդ,
Պարզ, հասարակ ռուս մի կին
Ծնեց մանուկ մի քնքշագին:
Հայրը սիրով մի անսահման
Վլադիմիր կոչեց նրան:
Եվ այդ օրը վառ ու խնդուն՝
Աղբյուրն եղավ ուժի այն մեծ,
Որն աշխարհը վերափոխեց,
Որին կոչում ենք պատմություն:

Հինգ տարեկան դեռ չի դառել,
Մանուկն արդեն գիրք է առել:
Պարզ է լեզուն իր մայրենի,
Հարուստ, հզոր, հնամենի:
Եվ մանկական գրքերի մեջ՝
Կարկաչում է աղբյուրն անվերջ...
Աղբյուրը հորդ ու կենարար
Կարկաչում է նրա համար:
Եվ խմում է մանուկն անհագ
Վառ խոհերի ու հույզերի
Ջուրն այդ հոսուն ու անապակ:
Կյանքն անցնում է, մանուկն աճում,
Վոլգա գետն է խուլ շառաչում:

Նրան սիրում էին բոլորն
Ու նրանով հպարտանում:
Նա ամենից ժիր ու խելոք
Աշակերտն էր դասարանում:

Նա մեծացավ: Եվ ոչ մի մարդ
Նրա աչքից չթաքցրեց
Ժողովրդի տանջանքը մեծ...
Եվ ուր էլ որ նա ոտք դրեց,
Տեսավ աղետ, ավեր, ավար,
Սև ուժերի հանդեսը չար:
Պալատներում քեֆ ու խնդում,
Պար ու երգեր, ծիծաղ ու ծափ,
Խրճիթներում աղքատություն,
Վիշտ ու թախիծ, ահ ու սարսափ:
Օրենքի սև խարազանն է
Ոստիկանի ձեռքին շաչում:
Քաղաքներում ֆաբրիկների
Շչակներն են ահա հնչում...
Անտանելի, ծանր է այնքան
Աշխատանքը հարկադրական:
Դաշտում ամեն թիզը հողի
Արցունքով է ծծված աղի:
Չի երևում դեռ լույսը վառ,
Երկիր, երկիր բազմաչարչար:
Գարնան մի օր,
Երբ շուրջ բոլոր
Հողն էր ծաղկում հառաչելով,
Գետն էր հոսում շառաչելով,
Մի լուր եկավ Պետերբուրգից:
Եկավ, արկի նման պայթեց,
Ուլյանովի տունը ցնցեց:
Վոլոդյայի աչքերի մեջ
Արտասուքներ երևացին,
Եվ զայրույթի կրակն անշեջ
Բոցավառեց նրա հոգին:
Ծանր էր այդ լուրն ու դառնագին:
— Դու մահվան ես դատապարտված,

Եղբա՛յր, ծաղիկ քո հասակում:
Սխալ էր քո ճամփան կյանքում:
Մեր տրնաքեկ ժողովրդին
Հալածանքից այս ահավոր
Չի ազատի ոչ մի տեռոր:
Ոչ մի տեռոր չի ցրի այս
Տանջանքներն ու վշտերն անհուն,
Ռևոլուցիան կտա միայն
Ժողովրդին ազատություն:

Բանտված է նա:
Պրիստավը
Իր աչքերը արյունամած՝
Վլադիմիրի վրա հառած
Բեղն է շտկում
Եվ աղմկում.
— Հարցնում եմ քեզ,
Պատասխան տուր,
Ի՞նչ ես այդպես
Դու եռանդով գործում իզուր:

Պատն է քո դեմ, պատանի՛, տե՛ս,
Չի՞ երևում միթե նա քեզ:
Ծիծաղում է նա, ասելով.
— Պատն է իմ դեմ, տեսնում եմ ես,
Բայց խարխուլ է նա հիմնովին
Եվ կփլվի, երբ հրես:
Եվ պրիստավը զայրացած
Գրիչը ջարդում, նետում է ցած:
Սակայն խարխուլ պատն էլ կյանքում
Ինքն իրեն չի խորտակվում:

Զինված Մարքսի մեծ ուսմունքով,
Անօրինակ մի հուզմունքով
Հին Նևայի ափը եկավ
Լենինը մեր երիտասարդ,
Եվ դեմ տվեց արծվի նման
Մրրիկներին իր կուրծքը նա,
Որ մարդկության ազատ կյանքի
Արևաշող ուղին բանա:

*Ադրբեջաներենից թարգմ. Հ. ՍԱՀՅԱՆ*

---

*ԱԹԱՆԵՍ ՍԵՆԱԼ*

# ՄԻՆԳԵՉԱՈՒՐ

*Ֆոտո Ս. ՋԱՔԻՅԱՆԻ*

*Քուռ գետի երկու ափերին ձգվել է ուռիների ու կաղամախիների մի կուսական անտառ: Հաստաբուն ու դարավոր ուռիներն այնքան խիտ են, որ այդ տեղերը բոլորովին արև չի թափանցում: Անտառի կանաչ բացատները ծածկված են եղեգներով: Այնտեղ շրջում են վայրի խոզերը և բույն են հյուսում թռչունները:*

*Գորշ սարի կավակող լանջերին անտառը հանդիպում է մի անանցանելի եղեգնուտի, ապա թեքվում դեպի Սամուխի լայն դաշտավայրերը: Քուռը հեռանում է անտառից և կորչում բարձր սարերի շուրջպարում: Այստեղ փրփրուն, պղտորված գետը թեքվում է և մտնում ահռելի մի ձոր:*

*Հինգ տարի առաջ այս անդնդախոր ձորի արևմտյան լանջի վրա գտնվում էր ադրբեջանական Մինգեչաուր փոքրիկ գյուղը: Այդ գյուղի բնակիչները դարեր շարունակ ձկնորսությամբ ու վայրի խոզերի որս են արել: Այժմ այդ հին գյուղը չկա: Գյուղը տեղափոխել են Մուղանի դաշտավայրը, իսկ նրա տեղը կառուցվում է Մինգեչաուրի ամբարտակը: Չորս տարի առաջ էքսկավատորները հին Մինգեչաուրի տեղը փորելով, գտել են ձիերի կմախքներ, կացիններ, զենքեր, տնային իրեր, կանացի բրոնզե ու արծաթե զարդեր ու գերեզմանաքարեր:*

*Քուռ գետը, ըստ երևույթին դուրս է եկել իր ափերից և իր բերած ավազի, տիղմի ու քարերի տակ ծածկել գյուղը...*

*Կառուցվող ամբարտակից ներքև, նախկին անմարդաբնակ տափաստանի միջով, սլաքի նման ձգվում է մի լայն ու ասֆալտապատ ճանապարհ, որի վրայով դեպի նորակառույցներն են սլանում շինանյութերով բարձած ավտոմեքենաները: Ուր որ նայում ես, մարդկանց աշխատանքն է եռում: Սարից ռետինե ժապավենաձև կոնվեյերները երկաթե գլանների վրայով պատրաստի բետոն են*

*իջեցնում ձորը, հսկայական էքսկավատորնե-րը ատամնավոր շերեփները խրելով սարի կուրծքը, միանգամից երկու տոննա հող են վերցնում, լցնում վագոնները։ Քիչ հեռու որոտում են հող պայթեցնող արկերը և երկինքը ծածկում թանձր փոշու վարագույրով։*

*Այստեղ Քուռ գետից վերցրած ջրի ուժեղ հոսանքով հալեցնում են հսկայական սարերի լանջերը։ Մոնիտորներից դուրս ժայթքող ջրի ուժեղ հոսանքը խփում է սարի խորդուբորդ կողերին ու ահագին զանգվածներ շառաչյուն պոկում է։*

*Քուռ գետի հոսանքով դեպի ցած մի քանի կիլոմետր երկարությամբ կառուցվում են ապագա ամբարտակի երկու բնական ու անմատչելի պատնեշներ։ Այս ահռելի ձորում բարձրանում է Կոմունիզմի նորակառույցներից մեկը՝ Մինգեչաուրի հիդրոկայանը։*

*Ամբարտակը կփակի Քուռ գետի պղտոր ու կատաղի հոսանքը, և մինչև Ալազանի գետաբերանը կտարածվի «Մինգեչաուրի ծովը»։*

*«Մինգեչաուրի ծովը» գարնանային հեղեղների ժամանակ կկարգավորի Քուռ գետի հոսանքը, կուժեղացնի Քռի գետային նավագնացությունը։*

*Քուռը Անդրկովկասի ամենամեծ ու ջրառատ գետն է։ Մինգեչաուրի հիդրոկայանը իր մեծությամբ կզիջի միայն Դնեպրոգէսին, բայց նրա ամբարտակն ավելի բարձր կլինի, քան Դնեպրոգէսինը։*

*Կընդլայնվի ոռոգման ցանցը, և դրա հետ միասին համարյա երկու անգամ կավելանան ռեսպուբլիկայի ցանքային տարածությունները։ Գյուղատնտեսական մթերքների չտեսնըված առատություն կստեղծվի։*

*Հիդրոկայանը կբավարարի նավթային Բաքվի արդյունաբերության լրիվ պահանջները։ Նրա ջրավազանից ելնող հարյուրավոր ջրանցքների կանաչ ու ծաղկառատ ափերին կկառուցվեն սոցիալիստական նոր ավաններ, կաճեն մրգառատ ու փարթամ այգեստաններ։*



*Էքսկավատորը փորում է ամբարտակը։*

*Նորակառույց Մինգեչաուր քաղաքն ընդամենը հինգ տարվա պատմություն ունի։ Նրբեմնի ամայի ու գորշ տափաստանում սովետական մարդիկ կառուցել են մի հոյակապ քաղաք։*

*Քաղաքը հինգ կենտրոնական փողոց ունի, որոնք թաղված են մշտադալար և մըրգատու ծառերի թավուտների մեջ։ Փողոցների երկու կողմով, մինչև «Մինգեչաուրի ծովը», բարձրացել են չորս-հինգ հարկանի բնակելի գեղեցիկ տները։ Քաղաքը կառուցվում է աստղաձև, բոլոր հինգ փողոցները գալիս հատվում են ծառերով ու ծաղկանոցներով շրջապատված Մ. Ջ. Բաղիրովի անվան հրապարակում։*

*Գետի աջ ափին, լայն տափարակի վրա գտնվում են աղյուսի և բետոնի սալաքար արտադրող գործարանները, որոնք բարձրորակ շինանյութեր են մատակարարում*



*Քուռ գետի եզերքով, ձգվել է ասֆալտապատ ճանապարհը։*

*Մինգեչաուր քաղաքին։ Քաղաքում ոչ մի րոպե չի դադարում շինարարական եռուզեռը։ Մինգեչաուրը աճում և զարգանում է։*

*Կանցնի ժամանակ և Սովետական Ադրբեջանի քարտեզի վրա կավելանա մի նոր ծով, որի ափին կկանգնի ստալինյան դարաշրջանի ամենամեծ կոթողներից մեկը՝ Մինգեչաուրգէսը։*

*Սարերի փեշերի մոտ, կապույտ ջրերում կլողան սպիտակաթև կարապներն ու բադերը, նրա կանաչ ափերին կծաղկեն վարդերը։ Նոր ծովի շուրջը կաճեն խաղողի ու նռան այգիները, ձիթենու և արևադարձային կուլտուրաների անծայրածիր տնկարանները։*

*Որքա՜ն գեղեցիկ ու գրավիչ կլինի Մինգեչաուրի ապագան։*



*Երբեմնի ամայի տափաստանում բարձրացել է Մինգեչաուր քաղաքը։*

# ԿԱՆԱՉ ՓՈՂՈՑԸ

Հ. ԱՐԲԱՍԶԱԴԵ

Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

Ապրում ենք կանաչ փողոցի վրա,
Մեր բակը փոքրիկ այգու է նման.
Ու երբ գալիս է գարունը ուրախ
Պատշգամբներում մեր գեղեցիկ տան
Կանաչ ճյուղերը բուրում են խաղաղ,
Մանուկներն առույգ վազում դեպի բակ,
Շնչում վաղորդյան օդը անաղարտ,
Սաղարթն է շրշում վառ արևի տակ...

Մեր նոր փողոցում ութ տարի առաջ
Չկար ո՛չ ծաղիկ, ո՛չ թուփ, ո՛չ կանաչ,
Հողի ոչ մի թիզ խոտով պատած չէր:
Դու մի՛ զարմանա, իմ փոքրիկ ընկեր:

Հիշում եմ, ինչպես ութ տարի առաջ
Դպրոցից խմբով դառնում էինք տուն,
Ամենափոքրիկ աղջիկը ժպտուն,
Որ սովորում էր մեր դասարանում.
Կանգ առավ, ասաց՝
— Աղջիկնե՛ր, եկեք
Մենք էլ ծառ տնկենք մեր նոր փողոցում:
— Հիանալի՜ միտք:
— Համաձայն ենք մենք:
— Հենց վաղը պետք է գործը սկսել:
Եվ մենք նույն տեղում խոստացանք իրար՝
Պինդ կպչել գործի, անխոնջ աշխատել:
Օգնության եկան տղաներն ուրախ,
Ո՛ր ապրում էին հարևան բակում:
Փորեցինք հողը, տնկեցինք ծառեր
Ու ջուր բերեցինք մեր կամքով տոկուն,
Ցրտից ու քամուց պաշտպանեցինք մեր
Տնկիները նուրբ: Անցան տարիներ,
Նոր տնկիները դարձան մեծ ծառեր.
Ապրում ենք կանաչ փողոցի վրա,
Մեր բակն է ծաղկում այգու պես ահա:

*Թարգմ. Հ. ՍԵՎԱՆ*



# ԲԱՔՎԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՏԱՆԸ

Հ. ՆԱՋԱՖՈՎ

Ֆոտո Վ. ԿԱԼԻՆԻՆԻ

Քաղաքի կենտրոնական փողոցներից մեկի վրա, կանաչազարդ հրապարակի դիմաց, այնտեղ, ուր թաղված են 26 Կոմունարները և հաստատված են նրանց կիսանդրիները, երևում է մի սյունազարդ շենք: Այդ շենքի տանիքն ու ճակատը զարդարված են բրոնզե քանդակներով:

Անընդհատ բացվում ու փակվում են ապակեպատ դռները, ընդունելով Բաքվի պատանի քաղաքացիներին:

Դա Բաքվի պիոներների տունն է, որը բացվել է 1936 թվականին Ադրբեջանի կոմպարտիայի Կենտկոմի քարտուղար ընկեր Միր Ջաֆար Բաղիրովի նախաձեռնությամբ: Ընկեր Բաղիրովը անձամբ հետաքրքրվել է ավելի հարմար, գեղեցիկ շենք ընտրելու հարցով, հետևել է վերանորոգման ընթացքին, հոգացել է, որ կաբինետներում լինեն բոլոր հարմարությունները, որպեսզի երեխաները կարողանան արդյունավետ պարապել, աշխատել և խելացի անցկացնել իրենց հանգիստը:



*Բաքվի պիոներական տունը երեխաների սիրելի վայրն է: Նկարում՝ Մեդինա Շիրինովան, Էրնա Կարապետովան և Սվետլանա Դիկովան ընդգրկված են պարահանդեսային պարերի խմբակում:*

Ամեն օր հազարավոր պատանի բաքվեցիներ լինում են պիոներների տանը: Նրանք պարապում են տարբեր խմբակներում. իսկ այդ խմբակներն այստեղ քիչ չեն: Պիոներների տանը կա պատանի ավիամոդելիստների գեղեցիկ ակումբ, նավաշինական խմբակ, հյուսնոց և մեխանիկական արհեստանոց: Լավ են աշխատում նաև պատանի բնասերների, նավթագործների, լուսանկարիչների և ռադիստների խմբակները: Շնորհալի բազմաթիվ պատանիներ են ընդգրկված ձեռագործի, կերպարվեստի, քանդակագործության, բալետի և այլ պարերի խմբակներում:

Լենին—Ստալինի գեղեցիկ սենյակում զրույցներ են կազմակերպվում մեծ առաջնորդների կյանքի և գործունեության մասին: Երեխաներն էքսկուրսիաների են գնում դեպի այն վայրերը, որոնք կապված են մեծ Ստալինի կյանքի և ռևոլյուցիոն գործունեության հետ: Նրանք լինում են Բաքվի շրջանի նաև այն տեղերում, որտեղ գործել են Ստալինի զինակիցներ և աշակերտներ՝ Ս. Օրջոնիկիձեն, Ս. Մ. Կիրովը, Ա. Ի. Միկոյանը, Մ. Ազիզբեկովը, Խ. Սաֆարալիեը և ուրիշները: Այստեղ կարելի է լսել զրույցներ մեր առաջնորդների մանկության և դպրոցական տարիների մասին, դիտել գեղեցիկ ալբոմներ, ֆոտոմոնտաժներ, մակետներ: Ռադիոակումբի պատերը զարդարված են բազմագույն բացիկնկարներով:

Այդ բացիկները Բաքվի պիոներներին ուղարկել են աշխարհի տարբեր երկրների կարճալիքայինները, որոնց հետ նրանք կապ են հաստատել: Հենց այստեղ էլ, սեղանների վրա, դրված են դետեկտորային, լամպավոր ռադիոընդունիչներ, որոնք պատրաստել են խմբակի անդամները:

Հետաքրքիր աշխատանք են տանում պատանի նավթագործները և մեխանիկները: Նրանք ուսումնասիրում են նավթի հանույթի պրոցեսը, նավթահորերի տեխնիկական հագեցվածությունը, պատրաստում են գործող մակետներ: Նրանք նավթահանքի այդպիսի մի գործող մակետ պատրաստեցին կոմերիտմիության երեսնամյակի պատվին և ուղարկեցին Մոսկվա՝ ցուցահանդեսի համար: Այդ մակետը մեծ հաջողություն ունեցավ համագումարի պատգամավորների շրջանում:

Մի կլոր սենյակում դրված է մի սև գլոբուս՝ ամբողջովին աստղերով ծածկված: Մարում է լույսը և առաստաղի տակ կախված վրանի վրա բռնկվում է աստղային երկինքը: Այդտեղ է պիոներների տան աստղագիտական խմբակը: Պատանի աստղագետները զբաղվում են մեծ գործերով: Ամառը նրանք մի արշավախումբ են ուղարկել ռեսպուբլիկայի շրջաններից

մեկը, որտեղ նախատեսնված է աստղադիտարան կառուցել: Նրանք դիտել են աստղային երկինքը, մթնոլորտային տատանումները, արևի և լուսնի լուսապսակները: Նրանց դիտողությունները գիտնականներին շատ պետք եկան:

Պիոներների տան պատանի մոդելիստները համամիութենական համբավ ունեն: Նրանք պատանի ավիամոդելիստների համամիութենական մրցումներում երեք անգամ նվաճել են փոխանցիկ գավաթը և այժմ այդ գավաթը նրանց ձեռքում է:

Պիոներների տան սպորտի սեկցիայի անդամները միշտ էլ լավ արդյունքների են հասնում: Ռեսպուբլիկական մրցումներում, շախմատի և շաշկու խաղերում, գեղարվեստական ինքնագործունեության օլիմպիադաներում նրանք միշտ էլ առաջին տեղերն են գրավում:

Ամեն տարի այստեղ կազմակերպվում է երեկո, որը կոչվում է «Բարեկամները հանդիպում են նորից»: Այդ երեկոյին գալիս են նավթագործ ինժեներներ, սպաներ, բանաստեղծներ, ուսանողներ, արտիստներ, երաժիշտներ:

Այստեղ, պիոներների տանը, պարապել են Սովետական Միության Հերոս Կոնստանդին Նազարովը և Ստալինյան մրցանակի լաուրեատ Վերա Ցիգնաձեն, երիտասարդության միջազգային ֆեստիվալի մասնակիցներ՝ երգչուհի Սոնա Ասլանովան և պարող Բեյուկ աղա Մամեդովը և շատ ուրիշներ:

Եվ այժմ նրանք բոլորը ջերմությամբ ու սիրով են հիշում Բաքվի պիոներների տունը, որն օգնել է նրանց զարգացնել իրենց ընդունակությունները և շնորհը:



*Զարդանկարչության խմբակում պատանի նկարիչների կարող ձեռքերը հասարակ կավե ամանները դարձնում են գեղեցիկ վազաներ: Նկարում՝ Կլարա Հասանովան, Սվետլանա Պաուկերը և Իրա Գաբրիելյան զարդանկարում են:*

# ՀԻԱՆԱԼԻ ՆՎԵՐԸ

Բաքվի պիոներներն ու դպրոցականները նոր տարում մի հիանալի նվեր ստացան: Նրանց համար քաղաքի կենտրոնում, Նիզամիի փողոցի վրա, Օպերայի և Բալետի թատրոնի դիմաց, կառուցված է Մ. Գորկու անվան Պատանի հանդիսատեսի թատրոնի նոր շենքը:

... Ապակեպատ դռները տանում են դեպի ընդարձակ նախասրահը, ուր դրված են մետաղից պատրաստված շարժական կախարաններ: Նախասրահից երեխաները բարձրանում են ֆոյե: Բարձր սյուները պահում են առաստաղը, որի վրա բազմաթիվ ֆիգուրային զարդեր կան: Ֆոյեն գոտևորված է փոքրիկ պատշգամբով, որը տանում է դեպի երկրորդ յարուսը:

Բացվում են դռները և մենք մտնում ենք հանդիսասրահ: Նա 500 տեղ ունի: Բաքվի Միկոյանի անվան կահույքի ֆաբրիկան երեխաների համար պատրաստել է փոքրիկ ու հարմար բազկաթոռներ: Պարտերից վերև գտնվում է ամֆիթատրոնը: Դահլիճի պատերի երկայնքով ձգվում են վերին յարուսների պատշգամբները: Այդ դահլիճի բոլոր տեղերից բեմը լավ է երևում: Դահլիճը ողողված է ջահերի և լապտերների մեղմ լույսով:

Թատրոնը շատ ուրիշ հարմարություններ էլ ունի: Առաստաղի մեջ կան էլեկտրական մոտորներ և տաքացնող սարքեր, որոնց օգնությամբ ձմեռը դահլիճում տաք է լինում, իսկ ամառը՝ զով:

Վերջերս կայացավ թատրոնի հանդիսավոր բացումը: Ստեղծվեց մի կուլտուրական հիմնարկ ևս, որը ժողովրդի և մեծ Ստալինի հայրական հոգատարության ապացույց է:



# ԵՐԵՎԱՆ, ԿՐՈՒՊՍԿԱՅԱՅԻ ԱՆՎԱՆ ԴՊՐՈՑ

Մեր թանկագին բարեկամնե՛ր.

Այս նամակը ձեզ գրում են Բաքվի դըպրոցներից մեկի պիոներները:

Մեր քաղաքն անվանում են «սև ոսկու» քաղաք: Ապշերոնյան թերակղզու ընդերքում անսպառ վառելիք կա: Ամեն օր մեր քաղաքից հեռավոր վայրերն են գնում բազմաթիվ գնացքներ, որոնք հարյուրավոր տոննա նավթ են տանում:

Մենք շատ ենք հպարտանում, որ ապրում ենք Բաքվում: Չէ՞ որ մեր քաղաքում ապրել և ռևոլյուցիոն մեծ աշխատանք է կատարել մեր սիրելի առաջնորդ և ուսուցիչ Ի. Վ. Ստալինը: Ադրբեջանի կոմունիստական պարտիայի տասնամյակի առթիվ իր ուղարկած ողջույնի հեռագրում ընկեր Ստալինը իրեն անվանել է «հին Բաքվեցի»:

Այստեղ, նրա ղեկավարությամբ, ուս-ուսի տված, մեր ազատության և երջանկության համար պայքարել են ռուսները և վրացիները, հայերը և ադրբեջանցիները: Մեր ժողովուրդները իրար հետ կապված են բազմադարյան բարեկամությամբ և եղբայրությամբ: Սովետական Ադրբեջանի ազատության համար Մեշադի Ազիզբեկովի, Խանլար Սաֆարալիևի հետ միասին պայքարել են Ստեփան Շահումյանը, Սուրեն Սպանդարյանը և հայ ժողովրդի մյուս ղեկավարները:

Մենք ուզում ենք, որ այդ բարեկամությունը աճի և ամրապնդվի: Թող այս նամակը մեր՝ անծանոթ եղբայրների և քույրերի մեծ բարեկամության սկիզբը լինի:

Գրեցեք մեզ, ձեր կյանքի, ուսման, պիոներական գործերի մասին: Մենք շատ ենք ուզում իմանալ, թե ինչպես է աճում և գեղեցկանում ձեր Երևան քաղաքը: Մենք ուզում ենք, որպեսզի դուք ամառը մեզ մոտ հյուր գաք:

*Պիոներական ողջույնով՝ Բաքու քաղաքի Լենինյան ռայոնի 72-րդ դպրոցի 7-րդ դասարանի պիոներներ՝ ՄԱԴԻՆԱ ԱԲԴՈՒԼԼԱԵՎԱ, ՌԱՅԱ ԱՀՄԵԴՈՎԱ, ԿԼԱՐԱ ԶՈԼԻՆԱ:*

*ԱԶԱՏ ՎՇՏՈՒՆԻ*

## ՄԱՅՐԱԿԱՆ ԽՈՍՔ

Ա՜յ, իմ բալիկ կարմրաքչիկ,
Փակիր մեղմիկ աչքրդ նուշիկ,
Օրոր ասեմ ես քեզ հուշիկ,
Ննջիր խաղաղ, ի՜մ անուշիկ:

Պատերազմի հրձիգ ճանկին
Տենչում է վերջ տալ քո կյանքին,
Բայց դեմ կանգնի, բալի՛կ անգին,
Խաղաղասեր մարդկանց կամքին:

Հիմա ամբողջ երկրագնդում
Բյուր մայրերի կոչն է թնդում.
— Պահանջում ենք ու միշտ պնդում՝
Խաղաղություն և կյանք խնդուն;

Բյուր մայրերն են Կրեմլին նայում՝
Խաղաղության դրոշին կայուն,
Կրեմլից Ստալինն է քեզ նայում,
Քնքուշ ժպտով քեզ փայփայում:

Նրան է նայում աշխարհն ամբողջ՝
Խաղաղասեր մարդկությունն ողջ.
Եվ հնչում է հզոր մի կոչ.
— Մենք պատերազմ չենք ուզում, ո՛չ:

Ա՜յ, իմ բալիկ կարմրաքչիկ,
Փակիր մեղմիկ աչքրդ նուշիկ,
Օրոր ասեմ ես քեզ հուշիկ.
Ննջիր խաղաղ, ի՜մ անուշիկ:




ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

Նկ. Բ. ՔՈՂՈՋՅԱՆԻ

1941 թվականի հուլիսի վերջին օրերն էին։ Սովետական Բանակի զորքերը համառ մարտերով նահանջում էին դեպի արևելք։ Ֆաշիստական հրոսակախմբերը այրում էին ուկրաինական գյուղակները և հասած ցորենը։

— Ինչքա՜ն բարիք է կորչում,— տխրությամբ ասաց ավագ ժանրաևը, դիտելով հրդեհների վառ ցոլքը և, բռունցքները սեղմելով, խստությամբ աղաղակեց.—Մենք դեռ ցույց կտանք ձե՜զ։ Ամեն բանի համար պատասխան կտաք։

Շտապ կատարվում էր կանանց ու երեխաների էվակուացիան, ֆաբրիկաների ու գործարանների սարքավորման տեղափոխությունը։ Հիտլերյան օդաչուները, ճակատի գիծն անցնելով, գնդակոծում և ռմբակոծում էին խաղաղ բնակչության շարասյուները։

Ցավով էին նայում այս բոլորին ավագ լեյտենանտ Պախոմովի վաշտի մարտիկները։ Վշտանում և, դեպի թշնամին ատելությամբ էր լցվում ավագ ժանրաևը։

Մութ, անլուսին մի երեկո ժանրաևն ու երկու մարտիկ ճանապարհին մի մարդ նկատեցին, որը երեսի վրա ընկած էր գետնին։ Մոտեցան։ Մարդն սպանված էր ռումբի բեկորով։ Սպանվածի լայն տարածած ձեռքերը կարծես շարունակում էին սեղմել բռնած հողը։ Նրա ուսով ուռած պայուսակի փոկն էր գցած։ Պայուսակում կային նամակներ, թերթեր և մի փոքրիկ ծանրոց։

— Փոստատար է,— կամաց ասաց մարտիկ Զուգայը և մտածկոտ ավելացրեց.— Իսկ այս նամակներին սպասողներ կա՞ն։

Փոստատարին թաղեցին հենց այդտեղ. ճանապարհի մոտ։ Նրա փաստաթղթերը վերցրին, որպեսզի տեղեկացնեն հարազատներին։ Բոլոր նամակները հասցեագրված էին Ջեմսկոյե գյուղակ, որ դեռ երեկ վերցրին, իսկ այսօր հիմնահատակ այրեցին հիտլերականները։ Որոշեցին նամակներն ուղարկել հետադարձ հասցեներով։

— Ինձ թվում է,— ասաց ավագը,— ծանրոցը պետք է բաց անել, որ իմանանք, թե ինչ կա մեջը։ Չէ՞ որ դա հասցեագրած է դպրոցին և ոչ թե մասնավոր անձի։ Տեսնենք ինչ կա, և այն ժամանակ պարզ կլինի, թե ինչպես վարվենք։



Բոլորը զարմացան։ Ծանրոցում դեղձի մի քանի կորիզ կար։ Ծանրոցում եղած գրությունից պարզվեց, որ Հայաստանի «Կոմերիտական» կոլտնտեսության դպրոցի պատանի բնասերները դեղձի մի նոր, շատ դիմացկուն տեսակ են աճեցրել, որի պտուղները դուրեկան համ ունեն։ Այդ տեսակի

անունը «Հայկական-պիոներական» են դրել։ Ուկրաինական Ջեմսկոյե գյուղակի դպրոցականները իմացել են այդ մասին «Պիոներսկայա պրավդայից» և նամակ են գրել Հայաստան, խնդրելով ուղարկել այդ տեսակի դեղձի կորիզներից։ Ուկրաինայի պատանի բնասերները որոշել են իրենց դպրոցամերձ հողամասում դեղձ աճեցնելու փորձ կատարել։

Հայաստանի պիոներները անմիջապես ընդառաջել են նրանց խնդրին։ Ահա այդ ծանրոցն էր սպանված փոստատարի պայուսակում։

Երբ ավագ ժանբաևը վերջացրեց նամակի ընթերցումը, լռություն տիրեց։ Ի՞նչ մըտքեր ասես, որ չէին անցնում ամեն մեկի գլխով։ Ահա թե ինչ արեց պատերազմը։ Ինչքա՞ն շատ լավ բան կար մեր հասակավոր, թե փոքրահասակ մարդկանց գործերում։

Լռությունն առաջինն ընդհատեց Զուգայը։

— Ա՛յ թե կծաղկեին «Հայկական-պիոներականները» Ջեմսկոյե գյուղակի հողերո՜ւմ... Իսկ հիմա ստիպված ենք ծանրոցը դեն նետել։ Դե, հո այսպիսի օրերին փոստը չպիտի ծանրաբեռնենք և կորիզները ետ ուղարկենք։ Իսկ հասցեատե՞րը... ո՞վ գիտի, թե այժմ որտեղ է ծանրոցի փոքրիկ հասցեատերը...

Ոչ ոք ուրիշ մի բան չգտավ ասելու։ Հետզհետե սկսեցին ցրվել։ Մնաց միայն ավագ ժանբաևը։ Նա դեռ երկար ժամանակ գլուխը կախած նստած էր քարի վրա. հիշում էր իր հարազատ կոլտնտեսությունը, գյուղական դպրոցի պիոներներին, իր երկու տղաներին։

ժանբաևի դեմքը հանկարծ պայծառացավ։ Նա խնամքով ծալեց Հայաստանի պիոներների նամակը և դրեց զինվորական վերնաշապկի գրպանը։ Հետո ընտրեց ամենամեծ կորիզներից երկուսը և թերթի մի կտորի մեջ փաթաթելով, նույնպես գրպանը դրեց։

Շուտով ավագ լեյտենանտ Պախոմովի վաշտը հերթական արշավի դուրս եկավ։

* * *

Դժվար է ասել՝ ուրախացան, թե տխրեցին Ստալինի անվան կոլտնտեսության մարդիկ, երբ իմացան իրենց հայրենակից Աբիլ ժանբաևի վերադարձի մասին։ Իհարկե, ափսոս էր երիտասարդ Աբիլը. չէ՞ որ հոսպիտալից գրած նամակում պարզ ասված էր, որ ստիպված են եղել կտրել նրա ոտքը։ Բայց կոլտնտեսականները հպարտանում էին, որ իրենց գյուղացին Սովետական Միության Հերոսի պատվավոր կոչում է ստացել։ Գաղտնապես ուրախանում էին նաև, որ պատերազմի դժվար օրերին շուտով կավելանա մի մարդ, որին բոլորը ճանաչում էին իբրև փորձված բամբակագործ և լավ ղեկավար։

Կոլտնտեսությունը հանդիսավոր կերպով դիմավորեց Սովետական Միության Հերոս Աբիլ ժանբաևին։ Համարյա ամբողջ գյուղից մարդիկ էին հավաքվել նրա տանը և շնորհավորում էին ստացած պարգևը։ Կարեկցություն արտահայտելով հանգստացնում էին և ասում, որ նա դեռ շատ կարևոր գործեր կարող է կատարել։ Հարց ու փորձ էին անում ռազմաճակատի մասին։ Հենց այդտեղ էլ որոշվեց ժանբաևին կոլտնտեսության վարչության նախագահ ընտրել։ Բանն այն է, որ վերջերս կոլտնտեսության գլուխ էր կանգնած ռազմաճակատ մեկնած նախկին նախագահի կինը, որը պատրաստվում էր Ալմա-Աթա գնալ՝ սովորելու։

Խորհրդակցեցին իրար հետ, ժողովում քվեարկեցին։ Աբիլ ժանբաևին միաձայն ընտրեցին նախագահ։

Նախագահը շատ գործ ունի։ Ստիպված է ամբողջ օրը լինել դաշտերում և բամբակի ցանքերում, այգիներում և կոլտնտեսության ֆերմաներում։ Միայն ուշ երեկոյան Աբիլ ժանբաևը գալիս էր վարչություն և նստում իր սեղանի մոտ։ Այստեղ էին գալիս նաև բրիգադիրներ, օղակավարներ և շարքային կոլտնտեսականներ։ Խոսում էին, դատում անցած օրվա մասին, աշխատանքները ծրագրում։

Երբեմն և ուրիշ թեմաների մասին էլ էր խոսակցություն լինում։ Հայրենակիցները հաճախ խնդրում էին նախագահին կրկին ու կրկին անգամ պատմել ռազմաճակատի մասին։ ժանբաևը չէր հրաժարվում։ Նա հիշում էր ճակատային կյանքի շատ հետաքրքիր մանրամասնություններ, տպավորություններ էր հաղորդում։ Ունկնդիրները ծանր հառաչում էին, երբ նախագահը պատմում էր նահանջի օրերի մասին և ուրախանում էին,

*երբ խոսքը վերաբերում էր Սովետական Բանակի հաղթանակներին։*

*Մի երեկո Աբիլ Ժանբաևը հիշեց սպանված փոստատարին։ Պատմեց այդ դեպքի մասին։*

*— Իսկ կորիզներն ի՞նչ արեցիր,—ընդհատեց պատմողին ծերունի այգեգործ Խաբիր Քերիմբաևը։*

*— Տանն ընկած են,— պատասխանեց Ժանբաևը։— Բոլորովին մոռացել էի։ Իսկ ես ինքս պատրաստվում էի տնկել։ Գուցե մեր հողում կաճի՞ «Հայկական-պիոներականը»։*

*Բոլորին էլ դուր եկավ այդ միտքը. դրանով հատկապես հետաքրքրվեց Խաբիր Քերիմբաևը։ Հաջորդ օրը նա Աբիլին օգնեց բակում տնկել երկու կորիզը։ Միասին էլ խնամում էին։*

* * *

*Անցավ վեց տարի։ Ստալինի անվան կոլտնտեսությունը հենց նոր էր վերջացրել բամբակի հարուստ բերքը պետությանը հանձնելը։ Այդ երեկո ամբողջ գյուղը երգում էր, պարում, ուրախանում։*

*Կոլխոզի նախագահ Աբիլ Ժանբաևը վերցրեց իր ծխամորճը, լցրեց ծխախոտով և բակ դուրս եկավ։ Երկու դեղձենու տակ վառ գույնի գորգով ծածկված թախտ կար դրած։ Ժանբաևը նստեց թախտին ու ծխեց։*

*Դռնակը բացվեց և ներս մտավ Խաբիր Քերիմբաևը։ Ծերունին բարևեց, մի դեղձ քաղեց և նստեց Ժանբաևի կողքին։*

*— Դու համը տեսե՞լ ես,— հարցրեց ծերունի Խաբիրը։*

*— Այո, պատասխանեց Ժանբաևը,— հրաշալի դեղձեր են։ Հյութալի, հոտավետ, քաղցր։*



*— Վերջապես քո ծառերը պտուղ տվեցին։ Այն էլ ի՜նչ պտուղ։ Իմ կարծիքով հարկավոր է մի հողամաս հատկացնել «Հայկական-պիոներական» դեղձի ապագա այգիների համար,— ասաց Խաբիրը և մի քիչ մտածելուց հետո շարունակեց,— գիտես, ես հաճախ մտածում եմ այն պիոներների մասին, որոնք հեռավոր Հայաստանում աճեցրել են այս հիանալի տեսակը։*

*Ժանբաևն ասաց, որ պետք է նամակ գրել Հայաստան, շնորհակալություն հայտնել երեխաներին լավ աշխատանքի համար։ Նա մտավ տուն, բազմաթիվ թղթերի մեջ փնտրեց, գտավ ժամանակից դեղնած նամակը, որ կորիզների հետ ծանրոցի մեջ էր։ Նայեց, տեսավ հետադարձ հասցեն կա...*

## ԳԱՐՈՒՆ Է ԳԱԼԻՍ

*ՌԱՖԱՅԵԼ ԿԱՍՊՅԱՆ*

Թեև դաշտերը չեն վարում,
Քամի և ցուրտ է այնքա՜ն,
Մերկ են ծառերը անտառում,
Ծաղիկ ու խոտ դեռ չկան,

Բայց ժիր առուն ձյունոտ սարից
Դեպի ձորը վազելիս,
Երբ անցնում էր մեր պարտեզից,
Ասաց՝
— Գարո՜ւն է գալիս։

# ԹՅՈՒՐՔ ԺՈՂՈՎՐԴԻ ԵՐԳԻՉԸ

Նազիմ Հիքմեթը ծնվել է 1902 թվին։ Ավարտելով լիցեյը, նա մտնում է ռազմածովային ուսումնարան։ Շուտով նա մասնակցում է ծովայինների ռևոլյուցիոն ելույթներին, որի համար հեռացվում է ուսումնարանից ու նավատորմից։

Պատահական չէր, որ տասնյոթամյա պատանին դարձավ ռևոլյուցիոներ։ Մանուկ հասակից նա տեսնում էր թյուրք աշխատավորության անտանելի կյանքը և ծայրահեղ աղքատությունը։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան ցնցեց ամբողջ աշխարհը։ Պատանի Նազիմը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո սկսեց երազել Սովետական Միություն գալու մասին։ Եվ ահա 1920 թվին նրա բուռն ցանկությունը կատարվեց։ Նազիմ Հիքմեթը մեկնեց Մոսկվա, որտեղ նա սովորեց Արևելքի աշխատավորության կոմունիստական համալսարանում։

Մոսկվայում Նազիմ Հիքմեթը ծանոթացավ Վլադիմիր Մայակովսկու հետ։ Նրանց ջերմ բարեկամությունը մեծ ազդեցություն թողեց Հիքմեթի վրա։ Մայակովսկին բարձր էր գնահատում նրա ազատաշունչ պոեզիան։

Վերադառնալով Թյուրքիա նա ամբողջովին նվիրվում է հարազատ ժողովրդի երջանկության համար մղվող պայքարին, դառնում է այդ պայքարի երգիչը։ Նա իր մեծ տաղանդի ամբողջ ուժով մերկացնում է թյուրքական մինիստրներին ու կառավարության գործիչներին, որոնք իրենց երկրի անկախությունը դարձրել էին առ ու ծախի առարկա։

Թյուրքական ռեակցիոներները շատ էին վախենում Նազիմ Հիքմեթից։ Նրանք տեսնում էին, որ Հիքմեթի բանաստեղծական խոսքը անմիջապես արձագանք է գտնում ժողովրդի սրտում և որոշեցին ազատվել նրանից։ Նրանք Հիքմեթի դեմ դատ բացեցին։ Բանաստեղծին մեղադրում էին «կոմունիստական պրոպագանդայի» մեջ։



Դատարանում Հիքմեթը հայտարարեց. «Այո՛, ես կոմունիստ եմ։ Ես կցանկանայի լինել ավելի ակտիվ կոմունիստ»։

Օրեցօր աճում է Հիքմեթի հեղինակությունը Թյուրքիայում և դուրս է գալիս նրա սահմաններից։ Նրա բանաստեղծությունները անգիր են անում բանվորներն ու գյուղացիները, զինվորներն ու նավաստիները։

Ռազմական ուսումնարանի սաներին խուզարկելիս, թյուրքական ժանդարմները նրանց մոտ գտան Հիքմեթի բանաստեղծությունների գրքերը։ Ռազմական դատարանը դրա համար դատապարտեց նրան 28 տարվա և 4 ամսվա միայնակ բանտարկության։ Այս անմարդկային վճռի դեմ բողոքեցին Թյուրքիայի և ամբողջ աշխարհի աշխատավորները։

«Իմ միակ մեղքն այն է,— ասում էր Հիքմեթը,— որ ես շատ, անչափ շատ եմ սիրում իմ ժողովրդին, իմ հայրենիքը»։

Բայց ո՞վ կարող է երգը բանտարկել։

Թյուրքական դահիճները ցանկանում էին բանտի մութ խցում փակել նաև Հիքմեթի ազատատենչ երգը, բայց այդ նրանց չհաջողվեց։ Բանաստեղծը բանտում էլ շարունակեց գրել։ Նրա երգերը գաղտնի դուրս էին բերվում բանտից և տարածվում ժողովրդի մեջ։ Ժողովուրդը Հիքմեթին միշտ էլ իր շարքերում էր զգում։ «Ես իմ պարտքը բանտում եմ կատարում»,— ասում էր նա։

Երկար տարիներ Հիքմեթը բանտում էր, բայց աշխարհի առաջադեմ մարդիկ չէին մոռացել նրան, պայքարում էին նրա ազատության համար։ Շատ երկրներում ստեղծվեցին Հիքմեթի պաշտպանության կոմիտե-

ներ։ Նրանք պահանջում էին ազատ արձակել բանաստեղծին և հասան իրենց նպատակին։

Տասներկու տարուց ավելի բանտի առանձնացած խցում պահելուց հետո, Թյուրք դահիճները ստիպված եղան ազատ արձակել Հիքմեթին։

Երկար տարիների բանտարկությունը չընկճեց ռևոլյուցիոներ-բանաստեղծի ըմբոստ ոգին։ Նա կրկնակի թափով նվիրեց իրեն իր տանջված ժողովրդի ազատության գործին, խաղաղության պաշտպանության մեծ գործին։

Այժմ Նազիմ Հիքմեթը գտնվում է Սովետական Միությունում և շարունակում է մերկացնել հայրենի Թյուրքիայի անկախությունն ամերիկյան իմպերիալիստներին վաճառող բռնակալներին։

Խաղաղության կողմնակիցների 2-րդ կոնգրեսում Նազիմ Հիքմեթին շնորհվեց գրականության ասպարեզում խաղաղության միջազգային մրցանակ։

Հարավային Ամերիկայի նշանավոր բանաստեղծ, խաղաղության միջազգային մըրցանակի լաուրեատ Պաբլո Ներուդան, որ Հիքմեթի հետ նույն մրցանակին արժանացավ, այդ առթիվ հայտարարեց.

— Հիքմեթի բանաստեղծությունը հզոր է, ինչպես հորդառատ գետը, և նրա պողպատե հոսանքը սլանում է մարտերին ընդառաջ։ Բանտարկության տարիները հասցրին այն բանին, որ նրա բանաստեղծական խոսքը հսկայական չափերի հասավ... Ես հպարտանում եմ, որ իմ բանաստեղծությունները, խաղաղության պայքարի այս վճռական ժամին, կանգնեցին նրա բանաստեղծությունների կողքին։

# Ո՛Վ ԻՆՉՊԵՍ ՎԱՐՎԵՑ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Փոքրիկը այնպես սրտակտուր էր լաց լինում, այնպես սրտակտուր, որ կարծես նրա ձեռքից ամբողջ աշխարհն էին խլել։ Բայց դե ի՞նչ մեծ բան էր պատահել։ Մեծե՞լ էին նրան, ինչ է։ Պարզապես լացկան է, էլի։

Այսպես էր մտածում Գագիկը, որը փոքրիկ տղայի ձեռքից խլել էր նրա գոլը և ինքն էր պտտեցնում։

— Տո՛ւր իմ գոլը,— ճչում էր փոքրիկը,— տո՛ւր...

Ու լաց էր լինում, արցունքները գլորվում էին նրա աչքերից։ Իսկ Գագիկի ընկերները՝ [illegible] ու Սուրիկը մի կողմ կանգնած դիտում էին ու զարմանում։

— Ա՛յ քե լացկանն է, հա՛, տես ինչպե՛ս է ճչում։

Փոքրիկը հուսահատվեց։ Նա հեծկլտանքով գնաց նստեց այգու նստարաններից մեկի վրա և սպառնաց.

— Սպասիր, մաման գա՛...

Այդ պահին այգու ծառուղիով անցնում էր մի ուրիշ պատանի։

Տեսնելով երեխային նա մոտեցավ և իմանալով նրա լացի պատճառը, դարձավ Գագիկին.

— Ինչո՞ւ ես երեխային վշտացնում. գոլը տուր իրեն։

Գագիկը չփորձեց էլ ընդդիմանալ,



որովհետև տղան նրան նայում էր այնպես վճռական, սպառնալի հայացքով...

— Դե՛, ես մի փոքր կխաղայի ու կվերադառնեի,— կմկմաց շփոթված Գագիկը, նա պարզապես լացկան է...

— Կխաղայի ու կվերադառնեի՜,— հեգնեց նրան պատանին,— ինչքա՞ն փոքրիկն ես. ո՞ր դասարանում ես սովորում:

— Չորրորդ,— բոլորովին շփոթվելով բորբոքվեց Գագիկը:

— Չորրո՞րդ. իսկ չէ՞ որ նա բոլորովին փոքրիկ է: Նա գուցե դեռ միայն եկող տարի դպրոց պիտի գնա:— Ապա Գագիկի ընկերներին դառնալով հարցրեց.

— Իսկ դուք ո՞ր դասարանում եք սովորում:

— Մենք էլ չորրորդ, նույն դասարանից ենք:

— Եվ անհարմար էլ չե՞ք զգում,— արհամարհանքով արտասանեց պատանին ու շարունակեց իր ճանապարհը:

Երեխան, որը նորից ստացել էր իր ճոճը, շարունակում էր խաղալ: Նա արդեն ուրախ ժպտում էր, նրա արցունքները չորացել էին. բայց նա դեռ էլի մեկ-մեկ, անկախ իրենից շարունակում էր հեծկլտալ: Այ թե ինչքա՞ն խորն էր նա վիրավորվել:

Իսկ երեք ընկերները շփոթված ու ամոթահար կանգնել էին:

— Լա՛վ,— վերջապես խոսեց Սուրիկը,— ասենք Գագիկը իսկապես մեղավոր էր, բայց մենք ի՞նչ ենք արել...

Մենք չենք սպասի, մինչև որ նրանք իրենք գիտակցեն իրենց արարքը: Մենք Վաչիկին ու Սուրիկին կպատասխանենք.

— Հենց ձեր հանցանքն էլ այն է, որ ոչինչ չեք արել, որ չեք արել այն, ինչ արեց անծանոթ պատանին:

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

# ԻՄ ԾԱՂԿԱՆՈՑԸ

Ծաղկանոցում իմ սիրուն
Ծաղիկ ունեմ տասնըվեց,
Ահա եկավ վառ գարուն՝
Պայծառ արևը փայլեց:

Ծաղիկներն իմ անհամար
Տեսեք ինչպես են ծաղկում,
Վարդ ու շուշան, լալազար
Եվ նունուֆար երկնագույն:

Իսկ հասմիկը սպիտակ
Թերթիկներն է բացել իր,
Կան և նարգիզ, և զանգակ,
Եվ մեխակներ ալ կարմիր:

Մի ծաղիկը Մոսկվայից,
Սերյոժան է ուղարկել,
Իսկ մյուսը Ռիգայից
Ժումայտիսը՝ պիոներ:

Եվ մի ծաղիկ էլ Մինսկից
Ուղարկել է ինձ Պետյան,
Թբիլիսիից ու Բաքվից՝
Կայտառ Ալին ու Շոթան:

Ես էլ երկրից իմ չքնաղ
Ծաղիկներ եմ ուղարկել,
Ծաղիկների հետ ուրախ
Նամակներ եմ ես նամփել:

Նրանց մոտ էլ թող աճեն
Ծաղիկները տասնըվեց
Ու նրանք էլ ճանաչեն
Հայրենիքը մեր այս մեծ:




# ԶԱՆԳՈՒ

*ՍԱՐՄԵՆ*

*Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

— Զանգո՜ւ, Զանգո՜ւ, վարար Զանգու,
Ի՞նչ ես խփվում ափից ափ,
Գիշեր-ցերեկ այդպես անքուն
Ո՞ւր ես վազում դու շտապ:

— Ո՜վ հարցասեր, խելոք մանուկ,
Լսիր, ահա պատմեմ քեզ.
Իմ ջրերով են կյանք առնում
Յոթ լուսատու ու նոր գէս:

Յոթ հոյաշեն հիդրոկայան
Ինձ են նայում ժպտադեմ,
Կանգ չեմ առնում ոչ մի վայրկյան,
Որ նրանք միշտ աշխատեն:

Կոհակներս ուժ և լույս են,
Լավ իմացիր, ժիր տղա,
Եթե այսօր ես չհոսեմ,
Ձեր տան լամպը չի շողա:

Չեն աշխատի Երևանի
Գործարանները բոլոր,
Գիշերները մութ կլինի
Փողոցներում լայն ու նոր:

Ջուր եմ բաշխում արտին, այգուն,
Ծաղիկներին հայրենի,
Ես մեր դաշտերն եմ ոռոգում,
Որ լիություն միշտ լինի:



Դարձել եմ ես լույսի ակունք,
Գալիս եմ ես Սևանից,
Դրա համար, սիրուն մանուկ,
Ողջ երկիրն է սիրում ինձ:



# ԲՆՈՒԹՅԱՆ ԱՊԱԳԱ ՎԵՐԱՓՈԽԻՉՆԵՐԸ

*Գ. ՋՈԼԱԽՅԱՆ*

*Նկ. Ան. ՋՈՐՊԱՃՅԱՆԻ*
*Ֆոտո Ք. ՍԵՎԱՆՑՅԱՆԻ*

Երևանի պիոներներից շատերն են սիրում պատանի բնասերների կայանը։

Այգեստանի ծառերի ու ծաղիկների մեջ թաղված այդ անկյունը, նրանց արտադպրոցական աշխատանքների վայրն է։ Այնտեղ նրանք սովորում են ճանաչել բնությունը և հետաքրքիր փորձերով ծանոթանում բույսերի մշակությանն ու զարգացմանը։

Կայանում ամեն օր աշխույժ եռուզեռ է տիրում։ Ինչքա՜ն ծաղիկներ կան այստեղ՝ բազմամյա ու միամյա գեորգինաներ, քրիզանթեմներ։ Դրանց հետ միասին ծաղկում են ծիրանի ծառերը, դեղձենիները, սալորենիները և իրենց անուշ բույրը սփռում չորս կողմ։

Պատանի բնասերների կայանի տնկարանում կան՝ դեղձի 200, ծիրանի 150 տնկիներ, 500 թուփ մորի, 300 թուփ հաղարջ և այլն։ Այդ բոլորն աճեցրել են երեխաները, որ նրանցից լավերը ընտրեն և ուղարկեն դպրոցական հողամասերի ծառապատման համար։ Երեխաներն աճեցնում են նաև բազմաթիվ կուլտուրական բույսեր...




— Բացի բամբակից ես ուզում եմ զբաղվել նաև մրգատու ծառերով,— ասում է 26 Կոմունարների անվան դպրոցի աշակերտ Ջոնիկ Սուքիասյանը,— փորձառումներ կանեմ, իսկ հետո կտեսնեմ, թե ինչպես կփոխվեն մեր մրգերը, ինչպես կփոխվի նրանց համը, ձևը, գույնը։

— Փորձառումներ դու կարող ես անել նաև բամբակի տարբեր սորտերի վրա,— ասում է նրան կայանի գյուղատնտես Նազիկ Ավետիսյանը։— Ա՛յ, երբ ամառը գա, դու եգիպտական բամբակի ծաղկափոշիով կփոշոտես մեր տեղական բամբակն ու կտեսնես, թե ինչպես քո սպիտակ ծաղկապսակ ունեցող բամբակի ծաղիկները դեղին պսակավոր կդառնան։

Ջոնիկը ոգևորված կրկնում է.

— Իհարկե, բամբակի վրա ես փորձառումներ կանեմ, բայց մրգատու ծառեր էլ կմշակեմ։

Նույն դպրոցի 8-րդ դասարանի աշակերտ Շաղոյան Ռոբերտը անցյալ տարի խնամել է 40 սորտի դեղձենի, 20 սորտի ծիրանի, դիտել է նրանց ծաղկումը և պտուղների հասունացումը։ Բացի այդ նա զբաղվել է նաև արհեստական փոշոտումներով, որ վաղահաս և մեր սովորական դեղձից ավելի փոքր կորիզ ունեցող դեղձ ստանա։




Պատանի բնասերների մի մասը զբաղվում է հացահատիկային կուլտուրաների մշակությամբ, մյուսները՝ պտղաբուծությամբ, ջերմապահությամբ, իսկ Սարոյան Վոլոդյան արախիս է մշակում։ Դա յուղատու կուլտուրա է։ Փոքրիկ թփեր ունի։ Երբ բացվում են ծաղիկներն ու փոշոտվում, ծաղկակիր ճյուղերը կռանում են ցած ու մտնում հողի մեջ։ Վոլոդյան օգնում է բույսին։ Նա հողը բարձրացնում է, թմբերը փխրեցնում, որ ճյուղերն ավելի հեշտ մտնեն հողի մեջ։ Դրանից հետո, հողում ձևավորվում են արախիսի համեղ պտուղները։ Լավ խնամքի շնորհիվ Վոլոդյան 10 քառակուսի մետր հողամասից ստացել է մեկ ու կես կիլոգրամ արախիս։ Դա ռեկորդային բերք է։ Եթե մի հեկտար լիներ, նա կստանար 15 ցենտներ, իսկ Գյուղատնտեսական ցուցահանդեսին կարող են մասնակցել հեկտարից նույնիսկ 14 ցենտներ արախիս ստացողները։




Մանուսաջյան Վաչիկը 15 սորտ պամիդոր է մշակում։ Նա կարտոֆիլի վրա պամիդոր պատվաստեց և ուզում է մի թփից ամռանը ստանալ պամիդոր, իսկ աշնանը՝ կարտոֆիլ։ Նա իր մշակած հողամասից 150 կիլոգրամ պամիդոր է ստացել։ Դա 50 կիլոգրամով ավելի է, քան սովորական խնամքի դեպքում։

— Մեր լեռնային շրջաններում սեխը իրեն լավ չի զգում,— պատմում է Սահակյան Ռուբիկը,— իսկ դդումը հեշտությամբ է աճում։ Մենք էլ դդումի վրա սեխի տարբեր սորտեր պատվաստեցինք. այժմ մենք ունենք սերմեր, որոնք կցանենք այս տարի։ Մեր ստացած սերմերի մեջ կլինեն այնպիսիները, որոնցից դդումի դիմացկունությամբ սեխ կաճի։ Մի քանի տարի շարունակ ընտրելով և լրացուցիչ փոշոտումներ կատարելով, մենք կստանանք այնպիսի սեխ, որը մեր լեռնային շրջաններում էլ կարող է աճել։

# Կարտոֆիլի երկու բերք

Հուլիսի 15-ն էր: Կարտոֆիլի բերքահավաքը վերջացել էր:

— Երբ մենք հիմա ցանենք գարնանային ցանքսից ստացված բերքի որոշ մասը, աշնանը կարտոֆիլի նոր բերք կստանանք,— բացատրում է կայանի վարիչ ընկեր Աստղիկը:

— Բայց չէ՞ որ կարտոֆիլը ցանում են գարնանը,— զարմանում են ոմանք:

— Այո, ընդհանրապես ցանում են գարնանը, բայց ակադեմիկոս Լիսենկոն առաջարկել է հարավային շրջաններում կարտոֆիլի ցանքս կատարել նաև ամառը: Ամառային ցանքսից ստացված պալարները ավելի խոշոր են լինում և շատ ավելի լավը՝ քան գարնան ցանքսից ստացվածը:

— Եկեք փորձենք տեսնենք՝ ինչպես կստացվի,— ասում է ընկեր Աստղիկը:

Երկրորդ անգամ նրանք ցանքս կատարեցին հուլիսի 20-ին: Հոկտեմբերի 15-ին սկսվեց ամառը ցանած կարտոֆիլի բերքահավաքը:

— Նայեցե՛ք, ինչքա՜ն մեծ է այս պալարը,— հրճվում է մի աղջիկ:

— Ինձ մոտ էլ կան մեծերը,— ասում է՝ մի ուրիշը:

— Ես ավելի մեծերն եմ ստացել,— բոչկոտում է Ալբերտը,— ի՞նչ ես կարծում, որքա՞ն կլինի սրա քաշը,— հարցնում է նա Ռևիկին, ցույց տալով ձեռքում բռնած պալարը:

— Կշռենք,— ասում է Ռևիկը և պալարը դնում կշեռքի վրա:

— Երեք հարյուր գրա՜մ,— զարմանում են երեխաները:

— Այո, երեխանե՛ր: Բերքն էլ բարձր է՝ 10 քառակուսի մետր տարածությունից մենք ստացանք 40 կիլոգրամ կարտոֆիլ՝ գարնանը ցանածից 5 կիլոգրամով ավելի,— ասում է ընկեր Նազիկը,— մյուս տարի այդ պալարներից ստացվող բերքն ավելի առատ կլինի ու աչքի կընկնի իր ժառանգական լավ հատկություններով: Դրա պատճառն այն է, որ հարավային ցածր շրջաններում կարտոֆիլի գարնանային ցանքսից ստացվող բույսերը պալարների առաջացման շրջանում ենթակա են լինում արևի կիզիչ ճառագայթների ազդեցությանը. դրա համար էլ նրանք լինում են թույլ, նվազ ու մանր: Իսկ ակադեմիկոս Լիսենկոն բացատրեց, որ ամառը ցանած կարտոֆիլի պալարների առաջացումը կատարվում է ավելի հով ժամանակ և դրանք առողջ են ստացվում ու լավ հատկություններ են ունենում:

— Հապա բե՞րքը, չէ՞ որ երկու անգամ են ստանում,— ասում է Ալբերտը,— մի՞թե դա քիչ է:



*26 Կոմունարների անվան դպրոցի աշակերտ Վոլոդյա Սարոյանը նախապատրաստում է իր հողամասը:*

— Շատ լավ է, իհարկե,— հաստատում է ընկեր Աստղիկը,— բայց հիշեցեք, որ կարտոֆիլի գարնանային ու ամառային ցանք կարելի է կատարել այն վայրերում, որտեղ աշունը երկար է և ձմռան ցրտերն ուշ են վրա հասնում. օրինակ՝ Արարատյան դաշտավայրում:

58-րդ դպրոցի աշակերտներ՝ Ռևիկ Սարգսյանին ու Ալբերտ Հովհաննիսյանին կարտոֆիլի 150—300 գրամանոց խոշոր ու առողջ պալարներ ստանալու համար թույլ են տվել մասնակցելու պատանի բնասերների Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին:



Մ. Գորկու անվան դպրոցի գերազանցիկ պիոներ Եղիսաբեթ Մելքոնյանն ու օղակի պիոներներ՝ Բաղալյան Լաուրան, Ավետիսյան Արաքսիան, Տոնոյան Օֆիկն ու Այվազյան Ժենյան զբաղվում են հացահատիկային կուլտուրաների մշակությամբ:

Երեխաները շատ էին լսել խաչաձև փոշոտվող

բույսերի լրացուցիչ փոշոտման մասին, որը բարձրացնում է բերքատվությունը, բայց թե ինչպես է կատարվում այդ, չգիտեին: Նրանց այդ բացատրեց ընկեր Նազիկը:

— Բերքատվության բարձրացմանը նպաստում է այն, որ խաչաձև փոշոտվող բույսերի մեծ մասը,



*Մաքսիմ Գորկու անվան դպրոցի աշակերտուհիներ՝ Լաուրա Բաղալյանը, Եղիսաբեթ Մելքոնյանը և Արաքսիա Ավետիսյանը իրենց մշակած ճյուղավոր ցորենի փնջով:*

ինչպես օրինակ տարեկանը, եգիպտացորենը, փոշոտվում են քամու միջոցով, իսկ քամին կարող է բոլորովին էլ չլինել, կամ ծաղկափոշին այնտեղ չտանել, որտեղ հարկավոր է,— շարունակում է գյուղատնտեսը: — Իսկ մենք արհեստականորեն փոշոտելով մեծ քանակությամբ լրացուցիչ ծաղկափոշի տալով, ստեղծում ենք հնարավորություն, որ բոլոր ծաղիկներն էլ փոշոտվեն, բեղմնավորվեն և լցվեն հատիկներով:

Իրենց փորձի կատարման համար երեխաները վերցրել էին երկու մարզ՝ 10 քառակուսի մետր տարածությամբ: Մեկում թողել էին, որ եգիպտացորենն ինքը փոշոտվի, իսկ մյուսում, բացի ազատ փոշոտումից, արհեստական կերպով լրացուցիչ փոշոտում կատարեցին: Դրա համար երեխաները պատրաստել էին թղթե տոպրակներ ու նրանց մեջ հավաքել մեծ քանակությամբ ծաղկափոշի: Այդ ծաղկափոշով նրանք լրացուցիչ կերպով փոշոտեցին փորձնական դաշտի բույսերը:

Օգոստոսի վերջին կշռելով բերքը, Եղիսաբեթի օղակի պիոներները տեսան, որ այն մարզից, որտեղ չի կատարվել լրացուցիչ փոշոտում, ստացվել է եգիպտացորենի երկու և կես կիլոգրամ մաքուր հատիկ, իսկ նույն տարածության փորձնականից՝ 3,2 կիլոգրամ:

— Իսկ ամենից հետաքրքիրն այն է,— պատմում են երեխաները,— որ լրացուցիչ փոշոտումից ստացված հատիկները լեցուն են ու առողջ:




26 Կոմունարների անվան դպրոցի աշակերտ Խաչատրյան Ալբերտը կայանում ունի 200 քառակուսի մետր հողամաս, որտեղ 20 տարբեր սորտի ելակ է մշակում: Լավ խնամքի շնորհիվ ամեն մի թփից նա ստացել է 700—800 գրամ ընտրովի ելակ: Այդ պտուղներից նա ցուցահանդեսի համար պատրաստել է մուրաբա և այլ անուշեղեն:

Բնասերների կայանը կես հեկտար տարածությամբ խաղողի այգի էլ ունի: Այստեղ խաղողի 15 սորտի վազեր կան: Խաղողի այգու խնամքով, բուժմամբ և այլ աշխատանքներով զբաղվում է Կրուպսկայայի անվան դպրոցի գերազանցիկ պիոներ Սարգսյան Անիկի խմբակը: Կարապետյան Լիլիկը, Ավետիսյան Աիդան, Նավասարդյան Ժասմենն այս տարի առաջին անգամ մի քանի վազերից խաղող ստացան: Նրանց խմբակը հարյուր քառակուսի մետր տարածության վրա ստեղծել է խաղողի տնկարան, որտեղ աճեցված վազերը պատրաստ են քաղաքի դպրոցների հողամասերը տեղափոխելու համար:

Նար-Դոսի անվան դպրոցի աշակերտուհիներ՝ Կիտիկյան Հերմինեն, Վարդանյան Արորիկը, Մկրտչյան Նորան զբաղվում են մեր ռեսպուբլիկայի համար նոր կուլտուրաների՝ սորգոյի, չումիզայի, չինական կորեկի, կոկ-սագիզի մշակությամբ:

Բոլորի մասին պատմել հնարավոր չէ: Երևանի պատանի բնասերները, իրենց ղեկավարներ՝ Աստղիկ Հարությունյանի ու Նազիկ Ավետիսյանի հետ միասին, իրենց բազմաթիվ աշխատանքներով կմասնակցեն Մոսկվայում կազմակերպվող Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին:



*Ալբերտ Խաչատրյանը իր աճեցրած ելակի թփի մոտ:*

# Անսովոր մի դեպք ջոկատում

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ

## 1

*Երկու րոպե էր մնացել, որ հավաքույթն սկսվեր, բայց Վիգենը դեռ չկար: Դա շատ անսովոր էր յոթերորդ «Գ» դասարանի պիոներական ջոկատի համար: Վիգենի կյանքում էլ այդպիսի բան չէր եղել:*

*Տղաներն անհանգստանում էին: Նրանք դասարանի դռանը հավաքված վիճում էին և րոպեն մեկ աչքերը գցում պատի մեծ ժամացույցին, որն ասես նրանց բարկացնելու համար անընդհատ կրկնում էր՝ «չի՛ գա, չի՛ գա, չի՛ գա»:*

*Ամենից շատ անհանգստանում էր օղակավար Թաթիկը. չէ՞ որ Վիգենն առաջինը պետք է զեկուցեր հավաքույթում: Ինչքան էլ լավ էր պատրաստվել օղակը: Անհանգստանում էր նաև ջոկատի խորհրդի նախագահ Ջավենը: Նա հաճախ մոտենում էր լուսամուտին և նայում էր փողոցի անկյունին, որտեղից սովորաբար դեպի դպրոց էր թեքվում Վիգենը:*

*Շուտով եկան ջոկատավար Արտաշեսն ու ավագ ջոկատավար Գուրգենը: Հավաքույթն սկսվեց: Անցավ տասնհինգ րոպե:*

*Հանկարծ դուռը լայն բացվեց: Դռան մեջ կանգնեց Վիգենը. բաճկոնը բաց, գլխարկը մի փոքր վեր քշած: Ընկերոջը տեսնելով տղաներն աշխուժացան ու սկսեցին նրան կանչել իրենց մոտ:*

*— Նստի՛ր,— խեթ նայելով նրան ասաց ջոկատավարը:*

*Վիգենն արագ մոտեցավ կախարանին, գլխարկն ու բաճկոնը կախեց ու գնաց իր տեղը: Նրա հետ նստող Թաթիկն աչքի պոչով զննեց ընկերոջն ու դժգոհությամբ շուռ տվեց դեմքը:*

*Ավագ ջոկատավարը և լսում էր տղաներին, և աշխատում էր գտնել Վիգեն Աբաջյանի ուշանալու պատճառը: Նա շատ լավ գիտեր այդ տղայի անհանգիստ բնավորությունը: Գիտեր, որ Վիգենն ուղղակի տարվում է ֆիզիկայի հրաշալիքներով: Միշտ առաջինն է շտապում ուսուցչին օգնելու, երբ ֆիզիկայի դասերին փորձեր են կատարում, երբ սարքերից մեկը խափանվում է...*

*Ահա հենց այդ Վիգենն էր, որ այսօր ուշացել էր ֆիզիկային նվիրված հավաքույթից:*

*Երբ ելույթները վերջացան, Վիգենը ձայն խնդրեց և այդտեղ, զեկուցումից հետո, պատմեց իր ուշանալու պատճառների մասին...*

## 2

*Ցերեկվա ժամը երկուսն էր: Վիգենն արդեն ճաշել էր ու դուրս եկել պատշգամբ, որ գնա ջոկատի հավաքույթի, երբ հարևան միջանցքից աղմուկ լսեց: Նա մոտեցավ դռանը և ականջ դրեց: Հանկարծ մեկը դուռը թափով բացեց: Դուրս նետվեց հարևանի աղջիկը՝ Շուշիկն ու կպավ Վիգենին:*

*— Լարերը վառվում են, Վիգե՛ն,— կրակելու նման արագ ասաց Շուշիկն ու վազելով պատշգամբի ծայրը, կանչեց՝ Գեվո՛րգ...*

*Գևորգը բակի մյուս ծայրում ապրող ներկարարի տղա էր: Նա տարիքով մի քիչ ավելի մեծ էր Վիգենից, բայց այնպես էր պատահում, որ միշտ նրա օգնականն էր լինում: Որևէ մեկի էլեկտրական պլիտայի կամ հարթուկի սեղմակները նորոգելու լիներ, ապահովիչի խցանների լարիկը փոխելու լիներ կամ թե մի ուրիշ գործ, Գևորգը միշտ Վիգենի կողքին էր: Բայց այդ րոպեին Գևորգը տանն ինչ-որ գործով էր զբաղված և*



միջանցքի աղմուկը չէր լսել։ Դրա համար Վիգենն էլ ձայն տվեց ընկերոջն ու միջանցքի դուռը բացեց։

Միջանցքում արդեն հավաքվել էին բնակչուհիներից շատերն ու վախեցած նայում էին առաստաղի կողմը, որտեղ մերկացած սև հաղորդալարերը իրար դիպչելով կապտականաչ կայծեր էին արձակում։ Հաղորդալարի մեկուսիչ ծածկույթի ծուխն ու ռետինի տհաճ հոտն զգացվում էր ամբողջ միջանցքում։ Վիգենը լսեց հավաքվածների վիճաբանությունը։

— Վազեմ էլցանց՝ իմաց տամ,— առաջարկեց մեկը։

— Ի՞նչ էլցանց, հրշեջ խումբ,— ասաց Շուշիկի մայրը։

— Վա՜յ, Վիգե՛ն ջան, հրդեհ կլինի,— վշվշաց Խաթուն տատիկը պատանուն տեսնելով։

— Ոչինչ չի լինի,— վճռական ասաց Վիգենն ու էլ չսպասեց, որ Գևորգը բարձրանա պատշգամբ։

— Սանդուղք է պետք... շո՛ւտ,— ընկերոջը դեմ վազելով բացականչեց նա ու ինքն առաջինը թռավ բակ։ Գևորգն առանց իմանալու, թե ինչ է եղել, վազեց նրա ետևից։ Շուշիկն էլ ձեռքով արեց Վիգենի քրոջը՝ Նազիկին ու շտապեց նրանց օգնության։ Մի րոպե հետո չորսն էլ պատգարակի պես բռնել էին ներկարարի երկճյուղանի բարձր սանդուղքն ու մոտենում էին պատշգամբ տանող քարե աստիճաններին։

Այդ ժամանակ հարևանուհիներից ամեն մեկն աշխատում էր մի բանով օգնել, որ կայծերը դադարեն։

— Կարճ միացում է, կարճ միացո՞ւմ,— գործը հասկացող մարդու նման ասաց Շուշիկի մայրն ու շտապեց տուն։

Շուտով նա բերեց հատակի խոզանակն ու նրա երկար կոթով փորձեց լարերն իրարից հեռացնել, բայց լարերը ճոճվելով ավելի մոտեցան և ավելի վառ կայծեր արձակեցին։

Հենց այդ ժամանակ երեխաները սանդուղքը ներս բերեցին։ Բոլորը մի կողմ քաշվեցին։ Կանանցից մի երկուսն օգնեցին սանդուղքը բաց անելուն։ Հենց նոր էին սանդուղքը պատին մոտեցրել, որ Վիգենն սկյուռի ճարպկությամբ մագլցեց վեր և ուշադիր զննեց մի երկու տեղ ծխացող լարերը։ Ապա նա թանկագին մի իր կորցրած մարդու պես շոշափելով տնտղեց իր գրպանները։ Հարևանուհիներից մեկը կարծես հասկացավ նրա միտքը, գնաց բերեց իրենց աքցանն ու պարզեց նրան։ Վիգենն իսկույն վերցրեց աքցանն ու մոտեցրեց մերկացած լարերին։

— Գևո՛րգ, կտրում եմ,— ասաց նա։

— Հը՞, այո...— հապճեպ պատասխանեց Գևորգը, ապա վերև նայելով, հանկարծ գոռաց.— Չէ՛, չէ՛... մի՛ արա...

Վիգենն աքցանը ետ քաշեց։ Նրա աչքերի առաջ պարզ գծագրվեց դասատու Մուրադյանի դեմքը, կշտամբող հայացքը։

Լարերն իրար շատ մոտ էին։ Եթե նա աքցանով փորձեր կտրել երկուսն էլ, կայծերը կշատանային, կբոցավառեին լարերի ծածկույթը և... «Աքցանի մասսան հոսանքի շղթայի մեջ մտցնելով բարձր ջերմություն ստեղծելու հնարավորություն կտանք...» վայրկյանապես մտաբերեց Վիգենն ու չգիտես ինչու նայեց ցածր կանգնած ու հայացքն ընկերոջը հառած Գևորգին։

— Հա՜,— գյուտ արածի պես հանկարծ բացականչեց Գևորգն ու վազելով Շուշիկենց տուն, բարձրացավ աթոռին և մի վայրկյանում պտտեց ու հանեց հաշվիչի վերևում ամրացված ապահովիչի խցանը։

— Հոսանքն անջատեցի, Վիգե՜ն,— ուրախ բացականչեց նա սենյակից ու դուրս թռավ միջանցք։

Վիգենը նայեց մերկացած լարերին։ Կայծերը չէին դադարում։

— Դու սպիտակ լարերի հոսանքն ես անջատել, խելո՜ք,— ծիծաղելով ասաց Վիգենը։

Գևորգը քորեց ծոծրակը, գլուխը տարուբերեց և այնպես նայեց ընկերոջը, որ կարծես առաջին անգամ էր տեսնում նրան։

Խաթուն տատիկը իրենց դռան առջևի թաց լաթը մեկնեց Վիգենին ու ասաց.

— Առ, առ, Վիգե՛ն ջան, հանգցրու։

Վիգենը տեսավ թաց լաթն ու մի ակնթարթում հիշեց, որ խոնավությունը հաղորդիչ միջավայր է ստեղծում և հոսանքը կխփի։

— Ո՛չ,— կտրուկ ասաց նա և ձեռքի աքցանը գրպանը դրեց։ Ապա նա ձեռքերն արագ մոտեցրեց կայծկլտող լարերին։

— Ա՜հ,— ճչաց նրա մայրը,— կայրվե՜ս...

Վիգենը նայեց մոր ահաբեկված դեմքին, ապա համարձակ մի շարժումով բռնեց լարերի չմերկացած մասերից և այրվող հատվածներն իրարից հեռացրեց։ Մի պահ հետո աքցանը նորից նրա ձեռքում էր։ Այս անգամ նա փորձված մոնտյորի պես կտրեց լարերից մեկը։ Կայծերն անմիջապես դադարեցին։

Վիգենն անխոս աշխատում էր։ Նա կտրած լարի մի ծայրը թեքեց մի կողմ, իսկ մյուս ծայրը հակառակ կողմ, որպեսզի նրանք նորից իրար կամ կողքի լարին չկպչեն։

Միջանցքում այնպիսի լռություն էր տիրում, որ կարծես ոչ ոք չկար այնտեղ։ Բոլորը լարված հետևում էին պատանու ճարպիկ շարժումներին։

Երբ կայծերը դադարեցին, բոլորն էլ խորը շունչ քաշեցին և, կարծես պայմանավորված, սկսեցին իրար ընդհատելով խոսել։ Իսկ Վիգենը վերցրեց Խաթուն տատիկի ձեռքի լաթն ու պինդ սեղմեց սև լարերի վրա ծխացող տախտակին։ Տախտակը թշշաց։ Միջանցքի նոսրացող ծխին խառնվեց թաց լաթից բարձրացող գոլորշին։

Վիգենը դեռ չէր իջնում սանդուղքից։ Նա ուզում էր հաստատ համոզվել, որ էլեկտրական վթարը կանխված է։

— Ամբողջ գիծը պետք է փոխվի,— հոգնած մարդու ձայնով ասաց Վիգենը լարերը ցույց տալով։

— Տախտակն էլ մարմարից պետք է լինի. թե չէ՝ այս ի՞նչ է,— ավելացրեց Գևորգը։

— Իհարկե, իհարկե,— հանգստացած արձագանքեցին բոլորն ու սկսեցին ցրվել։

— Վիգե՛ն, հավաքույթից ուշացար,— հանկարծ բացագանչեց Նազիկը։

Վիգենն արդեն իջել էր, երբ պատշգամբում շտապ քայլերի ձայներ լսվեցին։ Դռան շեմքին երևացին հարևան բակում ապրող մոնտյոր Գալուստն ու մի ուրիշ երիտասարդ։ Երևի բնակչուհիներից մեկն ու մեկը չէր վստահել Վիգենին ու նրա ընկերոջը և հեռախոսով իմաց էր տվել։

Գալուստն ուշադիր նայեց միջանցքի պատերին ու բարձրացավ սանդուղքի վրա։

— Էլի լավ եք պրծել,— կիսակատակ ասաց նա ու մոնտյորներին հատուկ շարժումով ձգմգեց լարերը։— Ամբողջ գիծը պետք է փոխվի։

— Իհարկե,— վրա բերեց Վիգենն ու սլացավ դպրոց...

Ահա ձեզ ամբողջ պատմությունը։



Վիգենը հուզված գնաց նստեց իր սովորական տեղը։ Ջոկատավար Արտաշեսը խորաղնին նայեց տղաներին, ժպտալով նայեց ավագ ջոկատավար Գուրգենին ու ասաց.

— Վիգենը վարվել է իսկական պիոների պես։ Իմ կարծիքով նրա ուշանալը ներելի է։

Իր մտերիմ ընկերոջ «հանցանքն» արդեն մոռացել էր նաև օղակավար Թաթիկն ու կամացուկ զրուցում էր նրա հետ։ Թաթիկը նույնիսկ հպարտությամբ նայեց մյուս օղակավարներին։

# ԼԵՈՆԱՐԴՈ ԴԱ ՎԻՆՉԻ

(Ծննդյան 500-ամյակի առթիվ)

Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ
*(Նկարիչ, Երևանի Գեղարվեստական ինստիտուտի դոցենտ)*

Լեոնարդո դա Վինչին իր ժամանակի ամենազարգացած մարդկանցից մեկն էր: Նա տիրապետում էր մի քանի լեզուների. հանճարեղ նկարիչ էր, քանդակագործ, արվեստի տեսաբան, մեծ ինժեներ, մեխանիկ, մաթեմատիկոս, բնագետ: Նա խոշոր դեր է կատարել գիտության և տեխնիկայի շատ և շատ ասպարեզներում: Լեոնարդոն ուսումնասիրել է թռչունների թռիչքը, նրանց թևերի կառուցվածքը և դրանց հիման վրա նախագծել թռչող ապարատ:



Սակայն Լեոնարդոն նախ և առաջ մեծ նկարիչ էր: Նա ծնվել է 1452 թվին, Իտալիայի Անկոնա քաղաքում: 16—17 տարեկան հասակում ընտանիքի հետ տեղափոխվում է Իտալիայի վերածննության կենտրոններից մեկը՝ Ֆլորենցիա և ընդունվում հայտնի նկարիչ-քանդակագործ Վերոկկիոյի արվեստանոցը, որպես աշակերտ: Այդտեղ Լեոնարդոն տիրապետում է կերպարվեստի «գաղտնիքներին»: Ժամանակակիցները պատմում են, որ մի անգամ, ուսուցչի բացակայության ժամանակ, աշակերտներն անզգուշությամբ կպչում են նրա դեռ չչորացած նկարներից մեկին («Քրիստոսի մկրտությունը») և փչացնում: Նրանք մտածում են. ի՞նչ կասի Վերոկկիոն, երբ տեսնի, որ իր աշխատանքը ջուրն է ընկել: Դրությունը փրկում է Լեոնարդոն: Նա վերցնում է վրձինը և արագ, մի քանի ժամվա ընթացքում, փչացրածը նորից է նկարում: Լեոնարդոյի նկարածը նախորդից ավելի լավն է ստացվում:

Վերոկկիոյի արվեստանոցում նա սովորելու ոչինչ չուներ: Լեոնարդոն դուրս է գալիս ինքնուրույն ստեղծագործական ասպարեզ, սակայն նկարիչներով հարուստ բուրժուական Ֆլորենցիայում նրան չեն գնահատում, և նա օրվա հացը վաստակելու համար նույնիսկ ստիպված է լինում ներկարարությամբ զբաղվել: Սկսվում է նրա թափառաշրջիկ կյանքը: Մի քանի տարի նա ապրում է Միլանում: Այնտեղ նա պատրաստում է Ֆրանչեսկո Սֆորցայի ձիարձանը և նկարում իր ամենանշանավոր գործը՝ «Խորհրդավոր ընթրիքը»: Այնուհետև նա լինում է Ֆլորենցիայում, Հռոմում: Ասում են, թե նա եղել է Հայաստանում և Իսպանիայում: 1516 թվին Ֆրանսիայի թագավորի հրավերով նա մեկնում է Ֆրանսիա և այնտեղ 1519 թվին վախճանվում:

Լեոնարդոյի գեղարվեստական ժառանգությունը քանակով մեծ չէ և ոչ բոլոր գործերն են մեզ հասել: Սակայն դրանք էլ բավական են, որպեսզի տեսնենք Լեոնարդոյի մեծությունը:

Լեոնարդոն վերածննության շրջանի Իտալիայի կերպարվեստը չտեսնված բարձրության հասցրեց: Նա խոշոր զարկ տվեց իրական կյանքի արտացոլմանը արվեստում և իր գործերով պայքարում էր կրոնի ու եկեղեցու դեմ: Երբ նա պատվիրատուների պահանջով կրոնական նկարներ էր նկարում, ապա դրանց մեջ էլ զովերգում էր մարդուն և իրական կյանքը: Օրինակ, «Սուրբ ընտանիք» նկարում նա պատկերել է մայրության թեման՝ Աննայի, նրա դստեր՝ Մարիամի և թոռան խմբանկարում: Մայրության թեմային են նվիրված նաև Լենինգրադի «Էրմիտաժում» գտնվող Լեոնարդոյի «Մադոննա Լիտտա» և «Մադոննա Բենուա» նկարները:

«Խորհրդավոր ընթրիք» որմնանկարում կրոնական տեսարանի փոխարեն նա տվել է մարդկային տարբեր խառնվածքների մի հավաքածու և նրանց հակադրել մատնիչ ու դավաճան Հուդային: Այդտեղ և մյուս նկարներում երևում է Լեոնարդոյի մեծ մարդասիրությունը:

Լեոնարդոն վերածնության դարաշրջանի ամենախոշոր դիմանկարիչն էր: Շատերն են տեսել Մոննա Լիզայի (Ջոկոնդա) դիմանկարը: Այդտեղ նկարիչը տվել է իր հերոսուհու խոր հոգեբանությունը:

Լեոնարդոն միաժամանակ բնանկարչության չգերազանցված վարպետ էր: Բնությունը նրա մոտ այն միջավայրն էր, որտեղ ապրում և գործում է մարդը և որի վրա միշտ զգացվում է մարդու գերիշխանությունը:

Կերպարվեստի համար խոշոր արժեք ունեն նաև Լեոնարդոյի տեսական հետազոտությունները:

Լեոնարդոն պատկանում է աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդներին: Մարդկային առաջադիմության ջահակիր Լեոնարդո դա Վինչին այսօր խաղաղության մարտիկների հետ է և նրանց օգնում է պայքարելու ժամանակակից իմպերիալիստական խավարամոլների դեմ, որոնք ձգտում են մարդկությանը նորից միջնադար տանել:

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ դրուժինաներում և ջոկատներում

### ԱԶԻԶԲԵԿՈՎԻ ԲՆԱՍԵՐՆԵՐԸ

Ազիզբեկովի շրջանի Ա. Ս. Պուշկինի անվան միջնակարգ դպրոցի պատանի բնասերները անցյալ տարի դպրոցի շրջապատի քարքարոտ տարածությունը հարթեցին, քարերից մաքրեցին և հողամասը դարձրին պատանի բնասերների փորձադաշտ: Այդ փորձադաշտում նրանք աճեցրին պտղատու տնկիներ, ծաղիկներ և այլ բույսեր: Աշնանը բազմահասկ ցորենի 180 հատիկից ստացվեց 5 կիլոգրամ սերմացու: Նրանց աճեցրած դդումներից մեկը կշռում էր 27 ու կես կիլոգրամ: Բացի այդ, նրանք իրենց աճեցրած տնկիների մի մասով ծառազարդեցին գյուղի փողոցները:

Պատանի բնասերները ձմռանը վճռեցին ապահովել փորձադաշտի անհրաժեշտ խոնավությունը: Նրանք ձյուն կուտակեցին: Բնագիտության կաբինետում նրանք աճեցրին տարբեր տեսակի բույսեր, և ուսումնասիրություններ ու դիտողություններ էին կատարում:

Այժմ պատանի բնասերները եռանդով գործի են անցել: Այս տարի նրանք լավագույն էքսպոնատներ կտանեն պատանի միչուրինականների շրջանային ցուցահանդեսին:

Իրենց աշխատանքով աչքի են ընկնում պատանի միչուրինականներ՝ Բենիկ Ասատրյանը, Անուշ Հարությունյանը և ուրիշները:

*Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ*

### ՄԵՐ ԲԱՌԱՐԱՆԸ

*Մեր դպրոցի աշակերտները շատ են հետաքրքրվում տեխնիկական գիտություններով: Դրա համար էլ նրանք ֆիզիկան շատ են սիրում: Ֆիզիկայի գիտելիքներն ավելի խորացնելու համար մեր դպրոցում խմբակ է կազմակերպված:*

*Խմբակի աշխատանքների ժամանակ պիոներներն օգտագործում են նաև ռուսերեն գրականություն, բայց ռուսերեն շատ բառեր չիմանալով, նրանք առաջ չէին հասկանում կարդացած նյութը:*

*7-րդ դասարանից սկսած Գ. Փալյանը պատրաստում էր զանազան տիպի ռադիոընդունիչներ: «Ռադիո» ամսագրում կարդալով հաճախականություն և այլ բառեր, նա չէր հասկացել դրանք: Ուսուցիչը օգնեց նրան: Կ. Սերայդարյանը արտադասարանական խմբակում պետք է զեկուցեր հրթիռային շարժիչների մասին: Նա դիմեց բառարանի օգնությանը և իմացավ, թե ինչ է նշանակում համընթաց շարժում և այլն: Այսպիսով Կ. Սերայդարյանը, Գ. Ջալիկյանը, Մ. Սարգսյանը և մյուսները յուրացրել են 50—60 անծանոթ բառ: Կույբիշևի հիդրոհանգույցի նորքում կառուցած մակետը դիտելիս ես աշակերտներին հաճույքով բացատրեցի ալիքաշափ, կարգավորում և այլ բառեր: Բայց այս աշխատանքը պետք էր ավելի կազմակերպված տանել:*

*Հարցը լուծեցին իրենք պիոներները: Ֆիզիկայի խմբակի պարապմունքի ժամանակ նրանք որոշեցին կազմել ֆիզիկայի ռուս-հայերեն բառարան: Բառերը առաջադրում էին աշակերտները, իսկ խմբագրական*

գործը կատարում էինք ես և պատի թերթի խմբագիր Գ. Չալիկյանը։

Պատի թերթում հատուկ հոդված գրվեց։ Աշակերտներին հանձնարարվեց «Հարստացրու հիշողությունդ» հատուկ ցուցատախտակից իրենց անձնական բառարաններում թարգմանված բառերն արտագրել։ Ես էլ իմ հերթին դասի ժամանակ առաջին անգամ հանդիպող բառը և նրա թարգմանությունը գրում եմ գրատախտակին, որպեսզի աշակերտները սովորեն։ Այս բոլորն օգնում են մեր բառարանը կազմելու աշխատանքներին։ Մեր բառարանը շատ է օգնում գիտելիքները ամրապնդելու գործին։

Խ. ԴԱՅԱՆ

(Երևանի Հ. Թումանյանի անվան դպրոցի ֆիզիկայի դասատու, վաստակավոր ուսուցիչ)

# ՋՈԿԱՏԻ ՊԱՏԻՎԸ

Դեռ նոր էր վերջացել առաջին քառորդը, իսկ Երևանի 67-րդ դպրոցի 6-րդ «բ» դասարանի ջոկատի խորհուրդն արդեն մտածում էր տարեվերջի քննությունների մասին։

Քիչ չէր մտահոգված նաև ամբողջ ջոկատը։ Եվ ինչպե՞ս չմտահոգվեին, երբ առաջին քառորդի արդյունքներն այնքան էլ փայլուն չէին։ Պիոներ Ժորա Բաղալյանը «երկուս» էր ստացել հանրահաշվից։ Մաթեմատիկական առարկաներից «երկուսներ» ունեին նաև Գրիշա Ղանթաղչյանը և Ռուբիկ Դավթյանը. երկրաչափությունից «երկուս» էր ստացել Միշիկ Զաքարյանը։

Ջոկատի պիոներները միանգամից զգաստացան։ Պետք է օգնել ընկերներին։ Չէ՞ որ նրանց «երկուսները» վերաբերում էին ամբողջ ջոկատին։ Եվ ջոկատն սկսեց օգնել ետ մնացող ընկերներին։



Երևանի 67-րդ դպրոցի 6-րդ «բ» դասարանի աշակերտներ՝ Էդիկ Սարգսյանը, Աշիկ Մառանչյանը և Ալեքսանդր Սողոմոնյանը փորձնական թելադրություն են գրում։ Ֆոտո Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

Երկրորդ և երրորդ քառորդներում երևացին այդ օգնության արդյունքները։ Գերազանցիկ պիոներ Գուգարք Ղազարյանի օգնությամբ Միշիկ Զաքարյանն իր «երկուսը» վերացրեց։ «Երկուսների» թիվը պակասեցրին նաև մյուս ետ մնացողները։ Այժմ նրանք ջոկատի մյուս պիոներների հետ կրկնում են անցած դասերը, նախապատրաստվում են տարեվերջի քննություններին։

Հայտնի է, որ միայն վերջին քառորդում շատ բան չես անի։ Այդ է պատճառը, որ 6-րդ «բ» դասարանի աշակերտները անցածն սկսեցին կրկնել դեռ երրորդ քառորդի սկզբից։ Հիմա, երբ մինչև տարեվերջը մի ամիս է մնացել, ջոկատն ավելի եռանդով է ձեռնամուխ եղել քննությունների նախապատրաստման գործին։

Երեխաները գլխավորապես կրկնում են անհատական կարգով, դասագրքերով։ Բացի այդ հաճախ նրանք խմբերով հավաքվում են դպրոցում, կամ որևէ մեկի տանը և իրար հարցեր են տալիս, թելադրություններ գրում։

Էդիկ Սարգսյանը, Ալեքսանդր Սողոմոնյանը և Աշիկ Մառանչյանը միասին են կրկնում։ Նրանք արդեն վերջացրել են բուսաբանությունն ու աշխարհագրությունը, իսկ այժմ կրկնում են լեզուները։ Միասին են պարապում նաև Հրաչիկ Խաժակյանը, Ալեքսանդր Հակոբյանը և Սուրիկ Թարյանը։

Կրկնությունների և դասերի յուրացմանը շատ են օգնում նաև դպրոցի առարկայական խմբակների պարապմունքները։ Ջոկատի գրեթե բոլոր պիոներները մասնակցում են առարկայական խմբակների աշխատանքներին։ Նրանք այնտեղ լրացուցիչ գիտելիքներ են ձեռք բերում։ Առարկայական խմբակները իրենց ծրագրերը այնպես են կազմել քննությունների նախապատրաստման այս եռուն շրջանում, որ աշակերտները վերհիշեն անցածը, ավելի լավ պատրաստվեն քննություններին։

Ջոկխորհուրդը տարվա ընթացքում կազմակերպել է էքսկուրսիաներ դեպի կենդանաբանական այգի, ապակու, մուլիտի և ժամացույցի գործարանները։ Այդ էքսկուրսիաները զգալիորեն հարստացրին աշակերտների գիտելիքները։

Վերջերս ամբողջ ջոկատը դիտեց «Պրժևալսկի» կինոֆիլմը։ Ֆիլմը օգնեց պիոներներին ավելի լավ ծանոթանալու ռուս մեծ ճանապարհորդի կյանքին, Ռուսիական երկրամասի և կենտրոնական Ասիայի բնության, կենդանական աշխարհի և կլիմայական պայմանների հետ։

Դպրոցի դիրեկցիան բոլոր հնարավորությունները ստեղծել է, որպեսզի աշակերտները պատրաստ դիմավորեն քննություններին։ Ավելի լավ են գործում կաբինետները, լաբորատորիաները. աշակերտներին օգնում են ուսուցիչները։ Նրանք հաճախ կազմակերպում են կոնսուլտացիաներ։ Կրկնության ժամանակ, երբ աշակերտները որևէ դժվարության են հանդի-

պում, դիմում են նրանց և ստանում սպառիչ պատասխաններ։ Ալեքսանդր Սողոմոնյանը և Էդիկ Սարգսյանը աշխարհագրությունը կրկնելիս դժվարության հանդիպեցին։ Նրանց օգնեց աշխարհագրության դասատու ընկ. Ա. Աղաջանյանը։ Այսպես է նաև մյուս առարկաներից։

Վեցերորդ «բ» դասարանի աշակերտները բոլոր հնարավորություններն օգտագործում են, որպեսզի ջոկատը պատվով դուրս գա տարեվերջի քննություններից։

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Ավագ ջոկատավարի գրույցը**






Շուտով կսկսվի պիոներական ուրախ ամառը։ Հազարավոր պիոներներ դուրս կգան արշավի։ Նրանք կլինեն մեր հայրենիքի տեսարժան շատ վայրերում, կտեսնեն նվիրական հուշարձաններ, կգիտեն կոմունիզմի մեծ կառուցումները։ Պատանի պիոներները սիրելի հայրենիքի համար կհավաքեն բազմաթիվ դեղաբույսեր, սերմեր. իսկ հարազատ դպրոցի բնագիտական կաբինետը կհարստացնեն նոր կոլեկցիաներով ու հերբարիումներով։ Իսկ ինչպե՞ս նախապատրաստվել ամառային արշավների։ Ահա այս հարցի վրա է, ջոկատավա՛ր, որ դու պետք է բևեռես քո ուշադրությունը։ Այժմվանից օղակներում և ջոկատում կազմակերպիր հետաքրքիր զրույցներ. դրա համար հրավիրիր գիտնականներին, ուսուցիչներին, փորձված տուրիստներին։ Նրանք թող պատմեն գիտական արշավախմբերի, սովետական խիզախ գիտնականների, բևեռային հետախույզների, ռուս մեծ ճանապարհորդների մասին։

Ինքդ պատմիր և բացատրիր պիոներներին, որ մեծ ճանապարհորդները չեն մոռացել այն ամենը, ինչ որ առաջին հայացքից թվացել է մանրուք։ Նրանք նախօրոք կազմել են մանրամասն մարշրուտ, ծրագիր, իրենց ճանապարհին ընկնող վայրերի մասին կարդացել են համապատասխան գրականություն, իրենք իրենց վարժեցրել են ցրտին, շոգին և ամեն տեսակ դժվարություն հաղթահարելուն։ Քո պարտականությունն է զգուշացնել պիոներներին, որ արշավների ժամանակ դժվարություններ շատ կլինեն, ինչպես օրինակ՝ գետակով անցնելը, լեռան գագաթ բարձրանալը։ Նրանք պետք է պատրաստ լինեն հաղթահարելու բոլոր դժվարությունները։

Սկսիր արշավի համար նախապատրաստական աշխատանքներ տանել օղակում. օրինակ՝ պիոներներին ցույց տուր ճանապարհային ազդանշանները, սովորեցրու Մորզեի այբուբենով, դրոշակներով խոսելու ձևը։ Դրա համար կազմակերպիր մոտակա, կարճատև զբոսանքներ և էքսկուրսիաներ։ Թող պիոներները միմյանց օգնելով խորացնեն և ամրապնդեն իրենց նոր գիտելիքները։ Ամեն նոր զբոսանքի գնալիս, երթի ժամանակը հետզհետե ավելացրու։ Այդպիսով նրանք աստիճանաբար կվարժվեն հեռավոր ճանապարհորդության և շատ չեն հոգնի։ Զբոսանքից հետո, կարճ զրույցի միջոցով ցույց տուր երեխաների սխալներն ու թերությունները, նշիր այն պիոներների անունները, որոնք ավելի շուտ են սովորել այդ բոլորը և օգնիր մյուսներին պատրաստ լինելու ամառային արշավներին։ Շատ լավ կլինի, եթե պիոներները այժմվանից սովորեն արշավի երգեր, սովորեն, թե ինչպես պետք է որոշել երկրի կողմերը։

Երկրի կողմերը կարելի է որոշել արևի, լուսնի, ծառերի, ինչպես նաև թռչունների թռիչքով։ Օրինակ, գարնանը չվող թռչունները՝ վայրի սագերը, արագիլները թռչում են դեպի հյուսիս, աշնանը՝ դեպի հարավ։ Երբ երկինքն ամպամած է և արևի միջոցով հնարավոր չէ երկրի կողմերը որոշել, պետք է բացատրել, որ կարելի է ծառերին նայելով իմանալ այդ բոլորը։ Ծառի հարավային կողմի կեղևի գույնը ավելի բաց է, բնի վրա և ծառի տակ աճում են ճյուղեր ու թփուտներ, որոնք համեմատաբար ավելի փարթամ ու կանաչ են. իսկ մյուս կողմը մուգ գույն ունի, մամռակալած է. այդ կողմի վրա աճած ճյուղերն ու թփերը ավելի բարակ են, դեղնավուն, ուրեմն դա ծառի հյուսիսային կողմն է։

Արշավի դուրս գալուց առաջ պետք է կազմակերպվի ստուգում։ Ստուգմանը երեխա-

ները պարտավոր են գալ իրենց պարկերով, որոնց մեջ դրված լինի հանդերձանքն ու անհրաժեշտ իրերը։ Ջոկատավա՛ր, անձամբ ստուգիր նրանց իրերի դասավորումը պարկերում, հագուստի ու կոշիկների դրությունը, ցույց տուր և սովորեցրու, թե ինչպես պետք է դասավորել բոլորը։ Երբ արդեն ամեն ինչ պատրաստ է, արշավի դուրս գալուց առաջ անհրաժեշտ է ստուգել ամեն մեկի առողջությունը։ Այն երեխաները, որոնք իրենց վատ են զգում արշավին չպետք է մասնակցեն։ Միայն այն ժամանակ, երբ զգում ես, որ բոլորը պատրաստ են, տուր արշավի դուրս գալու ազդանշանը։ Եվ այդպես ջոկատը դուրս կգա արշավի։



Անհրաժեշտ է փոքրահասակների համար 2—3 կիլոմետր, իսկ մեծահասակ պիոներների համար 4—5 կիլոմետր տարածություն անցնել առանց դադարի։ Ճանապարհը ավելի երկար շարունակելու դեպքում՝ ամեն 45—50 րոպեն մեկ անգամ հայտարարիր դադար։ Փոքր դադարի համար ընտրիր քամուց և արևից պաշտպանված տեղ ճանապարհի եզրին։ Հետևիր, որ երեխաները հանգստանան. առաջարկիր, որպեսզի հանգստանալիս ոտքերը դնեն բարձր տեղ, օրինակ՝ պարկերի վրա։ Եթե երթը տևում է չորս ժամից ավելի, հարկավոր է տալ մեծ դադար։ Դադարի վայրում պետք է լինի լավ և մաքուր ջուր, խարույկի համար վառելիք։ Այդպիսի դադարների համար լավագույն տեղը գետի ափն է, անտառի եզրը, լեռնալանջը, ձորակը և այլն։

Դադարի ժամանակ կարգ սահմանիր, որ բոլորն իրենց պարկերը հանեն և դնեն մի տեղ։ Այդ ժամանակ բոլոր պիոներներն էլ զբաղմունք պետք է ունենան, մի քանիսը թող գնան վառելիք հավաքելու, մի մասը խարույկի համար տեղ պատրաստեն, մյուսները ջուր բերեն և այլն։

Երբ խարույկի վրա կերակուր եփելու համար ամեն ինչ պատրաստ է, դադարի տեղում թող միայն հերթապահին, իսկ մյուս երեխաներին թույլ տուր գնալ լողանալու, եթե մոտերքում լողանալու լավ տեղ կա։ Դրանից հետո հայտարարիր ճաշի ժամ, իսկ այնուհետև՝ հանգիստ։

Ահա ամառային արշավներին դիմավորելու համար պիոներների հետ տարվող աշխատանքների հիմնական մասը, որ այժմյանից դու պետք է տանես քո ջոկատում և օղակներում։ Իսկ թե արշավ գնալու ժամանակ պիոներները ինչ պետք է վերցնեն իրենց հետ, տես մեր ամսագրի շապիկի չորրորդ էջը։



# ԶՎԱՐԹ ՁԱՅՆԵՐ



ՀԵՂ. ՇԻՐԱԶՅԱՆ

Նկ. ԱՐ. ՉՈՐԴԱՋՅԱՆԻ

Լույս է տեսել գրող Արաքսի «Զվարթ ձայներ» պատմվածքների ժողովածուն։

Ժողովածուն սկսվում է «Երկու սիրելի անուններ» պատմվածքով։ Փոքրիկ Լիլիկը խնդրում է մայրիկին մի բան պատմել. մայրը հուզմունքով պատմում է Լենինի մասին։ Նկարագրում է նրա մանկությունը, ապա խոսում է Լենինի մեծ գործը շարունակող ընկեր Ստալինի մասին։ Լիլիկը գոհ է մայրիկի պատմությունից։ Նա իր սեղանի վրա պահում է Լենինի և Ստալինի նկարները։

«Առաջին վարդը» պատմվածքում նկարագրված է մանկապարտեզի կյանքը։ Մանկապարտեզի սան Զմրուխտիկը դաստիարակչուհի Շուշիկի օգնությամբ աճեցնում է գեղեցիկ վարդեր, որոնցով զարդարում է Լենինի և Ստալինի նկարները։ «Գնում ենք Մոսկվա» պատմվածքում Արաքսը նկարագրում է այն հրճվանքը, որ համակել է երեխաներին։

Ստալի՛ն պապի, հարազատ,
Մեզ սիրում ես, փայփայում,
Քո թոռնիկներին ազատ,
Երջանիկ կյանք շնորհում:

Երեխաները այս սրտալի խոսքերով են ուզում ողջունել ընկեր Ստալինին։

Սովետական երկրի բոլոր ազգությունների երեխաները ապրում են [illegible] մերաշխ ընտանիքում։ Այս

*է նկարագրում հեղինակը իր «Նատա Կոմարովայի ջոկատը» հետաքրքիր պատմվածքում: Նատան Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ Ղրիմից փոխադրվել է Երևան: Նա մանկատան սան է և դառնում է օրինակելի ջոկատավար: Նատայի հայրը՝ Լեոնիդ Կոմարովը օդաչու է և կռվում է սովետական հայրենիքի թշնամիների դեմ: Նատան Երևանից գրում է հորը՝ «Ձմտածես և չտխրես ինձ համար... Շրջապատված եմ հոգատարությամբ: Ինձ այստեղ խնամում են հարազատի նման»:*

*Հայրը շատ ուրախ է, որ աղջիկը լավ պայմաններում է գտնվում. նա ավելի ոգևորված է կռվում ֆաշիստների դեմ: Իսկ Երևանում Նատայի ջոկատը աչքի է ընկնում իր խիստ կարգապահությամբ: Նրա բոլոր անդամները բոլոր առարկաներից բարձր թվանշաններ են ստանում և բացի դրանից բանջարանոց են մշակում:*

*«Փայլուն աստղ» հեքիաթում դաստիարակչուհին պատմում է երեխաներին մի հնդիկ աղջկա մասին: Նոնան իր տատիկի հետ ապրում է աղքատիկ խրճիթում: Մի օր Նոնան տեսնում է, թե ինչպես երկնքից մի փայլուն աստղ է ընկնում, և երբ ուզում է վերցնել, աստղը շողշողալով նորից երկինք է սլանում, աչքից անհայտանում: Նոնան և իր ընկերները փնտրում են, որ աստղը գտնեն: Նրանք մեծ դժվարություններով հասնում են մի մեծ քաղաք և տեսնում, որ իրենց փնտրած աստղը փայլում է բա՜րձր-բա՜րձր աշտարակի գագաթին: Երեխաները գտնվում են Մոսկվայում: Նրանք իրենց կրծքերին էլ աստղեր ունեն.— «Նորից են նայում իրենց կրծքերին և ինչ տեսնում, ամեն աստղի մեջ, մի բարի հարազատ հայացք է ժպտում»:*

*Հեքիաթի իմաստը պարզ է: Մոսկվան, ուր ապրում ու գործում է մեծ Ստալինը, աշխարհի փրկության փարոսն է:*

*Արաքսի «Զվարթ ձայներ» ժողովածուում զետեղված են պատմվածքներ ու հեքիաթներ: Ժողովածուն նկարազարդ է: Մեր երեխաները սիրով կկարդան այդ գիրքը:*

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

Մեր ամսագրի 1952 թ. առաջին համարում տպագրված «Հետաքրքիր ժամանցի» պատասխանները այս են.

### ՏՈՆԱԾԱՌԻ ՇՈՒՐՋԸ

Զարդարվել ես դու պայծառ
Մեր սիրելի տոնածառ,
Մենք կպարենք ու կերգենք
Չենք մոռանա քեզ երբեք:

### ՌԵԲՈՒՍ

Նոր տարում սովորենք միայն գերազանց:

### ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԿԱՏԱԿՆԵՐ

1. Երեք հինգի միջոցով ինչպես ստանալ երկուս.

$$5+5:5=2$$

2. Իրար տակ դրված երեք թվերից վեց թվանշան ջնջել այնպես, որ մնացած թվերը կազմեն քսան: Այդ պետք է կատարել այսպես՝

111 111
777 777
999 999

11+9=20

3. Երեք լուցկուն երկու լուցկի ավելացնելով ինչպես ստանալ ութ: Ահա լուծումը՝ *III+II=VIII*.

### ԿՐՈՍՎՈՐԴ-ՎԻԿՏՈՐԻՆԱ

Ուղղահայաց՝

1. Ամու-Դարյա, 2. Սիր-Դարյա, 3. Կարա-Կալպակիա, 4. Արալսկ, 6. Ուստ-Ուրտ, 8. Նուկուս:

Հորիզոնական՝

3. Կարա-Կում, 5. Արալյան, 7. Կասպիական, 9. Ուզբոյ:

«Տոնածառի շուրջը» խաղի, «թվաբանական կատակների» և ռեբուսի ճիշտ պատասխանները առաջինն ուղարկել են՝ է. Պետրոսյանը (Լենինյին Ղարաքաղ), Հ. Գասպարյանը (Ախուրիկ), Ա. Վարդանյանը (Վարդաբլուր), Ա. Բեյբուրյանը (Հոկտեմբերյան), Վ. Գրիգորյանը (Երևան), Գ. Զաղինյանը (Ստեփանավան) և ուրիշները:

Ժամանցի բոլոր խնդիրներին ճիշտ պատասխանել են՝ Սվետլանա Զաքարյանը (Վեդի) և Արիետա Նիկողոսյանը (Ստեփանավան):

## ԿՐՈՍՎՈՐԴ-ԿՐԻՊՏՈԳՐԱՄԱ



Կրոսվորդ-կրիպտոգրամայի ամեն մի հարցի պատասխանը պետք է բաղկացած լինի այնքան տառից, որքան թվանշան կա հարցից հետո: Օրինակ՝ առաջին հարցի պատասխանը կլինի «Մայրը», որը բաղկացած է 5 տառից: Այդ բառը կազմող տառերը պետք է տեղավորել համապատասխան վանդակներում. առաջին տառը՝ 74-րդ վանդակում, երկրորդը՝ 30-րդում և այլն: Մյուս հարցերի պատասխանները պետք է գտնել նույն կարգով:

Այսպիսով դուք կկարդաք ռուս մեծ գրողի մի աստյթը գրքի մասին:

Մ. Գորկու ստեղծագործություններից— 74, 30, 18, 43, 27. Գետ Միջին Ասիայում— 29, 47, 2. Երաժշտական գործիք— 11, 20, 34, 26. Գերմանական ժողովրդի մեծ բանաստեղծ— 51, 71, 24. 64, 4. Գոգոլի ստեղծագործություններից— 7, 9. 17, 12. Գործող հրաբուխ Եվրոպայում— 40, 15, 45, 62. Հունական դիցաբանության հերոս— 53, 46. 21. Միրգ— 77, 54, 39, 44. Հայտնի ֆիզիկոս— 70, 56, 33, 5. Մրճոլորտային երևույթ— 72, 52, 61. Ալ. Ծատուրյանի բանաստեղծություններից— 13, 73, 10. Օձի տեսակ— 65, 59. «Պատմություն խիկական մարդու մասին» գրքի հերոսը— 48, 69, 37 60, 57, 67. Գերմանացի կին գրող, խաղաղության միջազգային Ստալինյան մրցանակի լաուրեատ— 63 49, 8, 6, 76, 1. Սովետական ականավոր ֆիմիկոս— 23, 36, 68. Նազիմ Հիքմեթի հայտնի պոեմը— 50, 38, 31, 19. Ադրբեջանական նշանավոր բանաստեղծ— 66, 58, 3, 22, 16, 32. Բրազիլիական նոշակավոր գրող, խաղաղության միջազգային Ստալինյան մրցանակի լաուրեատ— 75, 28, 42 41, 25. Գերմանական Միասնական Սոցիալիստական պարտիայի ղեկավար— 55, 14, 35:

*Կազմեց ՀԱՅԿ ԽՈՒԴՈՅԱՆ*
*(Երևանի Թելմանի անվ. միջնակարգ դպրոցի աշակերտ)*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԵՎՈՒՆՑ Գ. *(խմբագիր)*, ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 03841, Պատվեր 203. Տիրաժ 5000. Տպագրական 2¼ մամուլ. Ստորագրված է տպագրության 17/IV—52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԿՈՆԿՈՒՐՍ

«Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է աշխարհագրական խնդիրների ռեսպուբլիկական կոնկուրս:

Կոնկուրսին կարող են մասնակցել 5-րդ, 6-րդ և 7-րդ դասարանների բոլոր աշակերտները: Յուրաքանչյուր դասարանին տրված է 5 խնդիր:

Խնդիրների մանրամասն պատասխանները պետք է ուղարկել խմբագրության հասցեով (Երևան, Մարքսի փողոց № 21): Կոնկուրսին մասնակցող աշակերտները պետք է նշեն իրենց ճիշտ հասցեն: Պատասխաններն ուղարկելու վերջնական ժամկետը սահմանված է մինչև հունիսի 15-ը:

Կոնկուրսի արդյունքները կհայտարարվեն «Պիոներ» ամսագրի սեպտեմբերի համարում:

Լավագույն պատասխանների համար սահմանված են հետևյալ մրցանակները՝

Առաջին կարգի 3 մրցանակ (աշխարհագրական արժեքավոր պիտույքներ):

Երկրորդ կարգի 7 մրցանակ («Պիոներ» ամսագրի ձրի բաժանորդագրություն 1 տարով):

Երրորդ կարգի 15 մրցանակ («Պիոներ» ամսագրի ձրի բաժանորդագրություն 6 ամսով):

Կոնկուրսն անցկացնելու համար կազմված է հանձնաժողով հետևյալ կազմով՝

Ա. ՕՀԱՆՅԱՆ, Ս. ՃՈՒՂՈՒՐՅԱՆ, Ա. ՂԱԶԱԽԵՑԱՆ, Մ. ՄԱԴԱԹՅԱՆ, Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ:

### Կոնկուրսում առաջադրված խնդիրները ըստ դասարանների

### 5-ՐԴ ԴԱՍԱՐԱՆ

1. Հունիսի կեսերին «Կ» քաղաքի մոտ գտնվող ճամբարում պիոներները ռադիոյով լսեցին Մոսկվայից հաղորդվող ճշգրիտ ժամանակի ազդանշանը: Մոսկվայի ժամանակով ժամը 12-ն էր:

Ճամբարի ժամացույցն այդ ժամանակ ցույց էր տալիս ժամը 16-ը: Ո՞ր քաղաքի մոտ էր գտնվում ճամբարը:



2. Հյուսիսային լայնության 72° 30′ և արևելյան երկարության 33° վրա խարտակվող նավին սովետական ո՞ր խոշոր նավահանգստից կարելի է ամենաշուտ օգնություն ցույց տալ և օգնության հասնող նավը ե՞րբ տեղ կհասնի, եթե նա մեկ ժամում անցնում է 30 կիլոմետր:

3. Քարտեզի պատկերված հատվածում ցույց տվեք և անվանեցեք ձեզ ծանոթ աշխարհագրական վայրերը՝ օվկիանոսներ, ծովեր, նեղուցներ, կղզիներ, թերակղզիներ, աշխարհամասեր:

4. Նկարագրեցեք, թե ինչպե՞ս կչափեք բլրի բարձրությունը: Բլուրը և նրա չափումը պատկերեցեք գծագրի վրա:

5. Արտաքին ուժերի ազդեցության տակ ցամաքի մակերևույթի փոփոխման մի քանի կոնկրետ օրինակներ բերեք ձեր բնակավայրից և շրջանից:

## 6-ՐԴ ԴԱՍԱՐԱՆ

1. Նավարկեցեք Աֆրիկայի շուրջը, անվանելով այն ջրային տարածությունները, որով պետք է անցնեք:




2. Անվանեցեք ժողովրդական և դեմոկրատական երկրները, նրանց մայրաքաղաքները և ասացեք, թե նրանցից ո՞րը որտեղ է գտնվում:

3. Հյուսիսային արևադարձով պտտվեցեք երկրագնդի շուրջը: Ի՞նչ օվկիանոսներ, ծովեր, խոշոր կղզիներ, թերակղզիներ, անապատներ, գետեր կանցնեք:

4. Ռուս ճանապարհորդներից ո՞վ որ աշխարհամասն է ուսումնասիրել և ե՞րբ:

5. Անվանեցեք աշխարհագրական այն վայրերը՝ ծովեր, նեղուցներ, կղզիներ, թերակղզիներ, աշխարհամասեր և օվկիանոսներ, որոնք ծանոթ են ձեզ քարտեզի տվյալ հատվածում:

## 7-ՐԴ ԴԱՍԱՐԱՆ

1. Սովետական Միության ո՞ր գոտում և ո՞րտեղ է գտնվում ստորև նկարագրված վայրը:

«Տարօրինակ է թվում այս երկիրը: Փոթորիկները լինում են առանց անձրևի: Աղբյուրները առվակներ չունեն: Լճերը հոսք չունեն: Բույսերը տերևներ չունեն: Շիկացած ավազը ծխում է այրող քամուց: Արեգակը սքողված է դեղին մշուշով»:

2. Ե՞րբ և ի՞նչպես Մոսկվան կդառնա վեց ծովերի նավահանգիստ: Որո՞նք են այդ 6 ծովերը և Մոսկվայից ի՞նչ ջրային ճանապարհներով կարելի է հասնել այնտեղ:

3. Որքա՞ն ընդհանուր կարողություն կունենան կոմունիզմի մեծ կառուցումների հիդրոկայանները. տարեկան որքա՞ն էներգիա կարտադրեն դրանք և որքա՞ն տարածություն կոռոգվի ու ջրովի կդարձվի այդ հիդրոկայանների ջրամբարներից:

4. Սևան-Զանգու Կասկադի ավարտով քանի՞ հիդրոկայան կգործի Զանգվի վրա և որո՞նք են դրանք: Ո՞րն է նրանցից ամենամեծը լինելու:

5. Որո՞նք են Հայկական ՍՍՌ ռելեֆի ամենաբարձր և ամենացածր կետերը, որքա՞ն են նրանք ծովի մակերևույթից բարձր, որո՞նք են ամենատաք և ամենացուրտ կետերը (ցույց տալ ջերմաստիճանը):

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԿՈՆԿՈՒՐՍ

«Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է աշխարհագրական խնդիրների ռեսպուբլիկական կոնկուրս:

Կոնկուրսին կարող են մասնակցել 5-րդ, 6-րդ և 7-րդ դասարանների բոլոր աշակերտները: Յուրաքանչյուր դասարանին տրված է 5 խնդիր:

Խնդիրների մանրամասն պատասխանները պետք է ուղարկել խմբագրության հասցեով (Երևան, Մարքսի փողոց № 21): Կոնկուրսին մասնակցող աշակերտները պետք է նշեն իրենց ճիշտ հասցեն: Պատասխանները ուղարկելու վերջնական ժամկետը սահմանված է մինչև հունիսի 15-ը:

Կոնկուրսի արդյունքները կհայտարարվեն «Պիոներ» ամսագրի սեպտեմբերի համարում:

Լավագույն պատասխանների համար սահմանված են հետևյալ մրցանակները՝

Առաջին կարգի 3 մրցանակ (աշխարհագրական արժեքավոր պիտույքներ):

Երկրորդ կարգի 7 մրցանակ («Պիոներ» ամսագրի ձրի բաժանորդագրություն 1 տարով):

Երրորդ կարգի 15 մրցանակ («Պիոներ» ամսագրի ձրի բաժանորդագրություն 6 ամսով):

Կոնկուրսն անցկացնելու համար կազմված է հանձնաժողով հետևյալ կազմով՝

Ա. ՕՀԱՆՅԱՆ, Ա. ՃՈՒՂՈՒՐՅԱՆ, Ա. ՂԱՋԱԽԵՑՅԱՆ, Մ. ՄԱԴԱԹՅԱՆ, Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ:

### Կոնկուրսում առաջադրված խնդիրները ըստ դասարանների

### 5-ՐԴ ԴԱՍԱՐԱՆ

1. Հունիսի կեսերին «Կ» քաղաքի մոտ գտնվող ճամբարում պիոներները ռադիոյով լսեցին Մոսկվայից հաղորդվող ճշգրիտ ժամանակի ազդանշանը: Մոսկվայի ժամանակով ժամը 12-ն էր:

Ճամբարի ժամացույցն այդ ժամանակ ցույց էր տալիս ժամը 16-ը: Ո՞ր քաղաքի մոտ էր գտնվում ճամբարը:



2. Հյուսիսային լայնության 72° 30′ և արևելյան երկարության 33° վրա խորտակվող նավին սովետական ո՞ր խոշոր նավահանգստից կարելի է ամենաշուտ օգնություն ցույց տալ և օգնության հասնող նավը ե՞րբ տեղ կհասնի, եթե նա մեկ ժամում անցնում է 30 կիլոմետր:

3. Քարտեզի պատկերված հատվածում ցույց տվեք և անվանեցեք ձեզ ծանոթ աշխարհագրական վայրերը՝ օվկիանոսներ, ծովեր, նեղուցներ, կղզիներ, թերակղզիներ, աշխարհամասեր:

4. Նկարագրեցեք, թե ինչպե՞ս կչափեք բլրի բարձրությունը: Բլուրը և նրա չափումը պատկերեցեք գծագրի վրա:

5. Արտաքին ուժերի ազդեցության տակ ցամաքի մակերևույթի փոփոխման մի քանի կոնկրետ օրինակներ բերեք ձեր բնակավայրից և շրջանից:

## 6-ՐԴ ԴԱՍԱՐԱՆ

1. Նավարկեցեք Աֆրիկայի շուրջը, անվանելով այն ջրային տարածությունները, որով պետք է անցնեք:




2. Անվանեցեք ժողովրդական և դեմոկրատական երկրները, նրանց մայրաքաղաքները և ասացեք, թե նրանցից ո՞րը որտեղ է գտնվում:

3. Հյուսիսային արևադարձով պտտվեցեք երկրագնդի շուրջը: Ի՞նչ օվկիանոսներ, ծովեր, խոշոր կղզիներ, թերակղզիներ, անապատներ, գետեր կանցնեք:

4. Ռուս ճանապարհորդներից ո՞վ որ աշխարհամասն է ուսումնասիրել և ե՞րբ:

5. Անվանեցեք աշխարհագրական այն վայրերը՝ ծովեր, նեղուցներ, կղզիներ, թերակղզիներ, աշխարհամասեր և օվկիանոսներ, որոնք ծանոթ են ձեզ քարտեզի տվյալ հատվածում:

## 7-ՐԴ ԴԱՍԱՐԱՆ

1. Սովետական Միության ո՞ր գոտում և ո՞րտեղ է գտնվում ստորև նկարագրված վայրը:

«Տարօրինակ է թվում այս երկիրը: Փոթորիկները լինում են առանց անձրևի: Աղբյուրները առվակներ չունեն: Լճերը հոսք չունեն: Բույսերը տերևներ չունեն: Շիկացած ավազը ծխում է այրող քամուց: Արեգակը սքողված է դեղին մշուշով»:

2. Ե՞րբ և ի՞նչպես Մոսկվան կդառնա վեց ծովերի նավահանգիստ: Որո՞նք են այդ 6 ծովերը և Մոսկվայից ի՞նչ ջրային ճանապարհներով կարելի է հասնել այնտեղ:

3. Որքա՞ն ընդհանուր կարողություն կունենան կոմունիզմի մեծ կառուցումների հիդրոկայանները. տարեկան որքա՞ն էներգիա կարտադրեն դրանք և որքա՞ն տարածություն կոռոգվի ու ջրովի կդարձվի այդ հիդրոկայանների ջրամբարներից:

4. Սևան-Զանգու Կասկադի ավարտով քանի՞ հիդրոկայան կգործի Զանգվի վրա և որո՞նք են դրանք: Ո՞րն է նրանցից ամենամեծը լինելու:

5. Որո՞նք են Հայկական ՍՍՌ ռելեֆի ամենաբարձր և ամենացածր կետերը, որքա՞ն են նրանք ծովի մակերևույթից բարձր, որո՞նք են ամենատաք և ամենացուրտ կետերը (ցույց տալ ջերմաստիճանը):




### Ա. ԳԵՐՑԵՆ

1848 թվի հունիսյան ռևոլյուցիայի օրերին Փարիզի փողոցներով անցնում էին տասնյակ հազարավոր մարդիկ: Նրանց շարքում էր նաև ռուս մեծ ժողովրդի զավակ Գերցենը:

— Կեցցե՛ ռևոլյուցիան...,— բացականչում էր նա:

Մեծ ռևոլյուցիոն դեմոկրատի կյանքն անցավ դաժան ու մռայլ միջավայրում:



Դեռ 1825 թվի դեկտեմբերի 14-ին, երբ ցարական կառավարությունը մահապատժի ենթարկեց ռուս դեկաբրիստներին, Գերցենը և ապագա բանաստեղծ Օգարյովը բարձրացան Վորոբյովի բլուրները: Նրանք այնտեղ երդվեցին՝ իրենց կյանքը զոհել ռևոլյուցիայի գործի համար: Ցարական ոստիկանությունը հետապնդում էր Գերցենին: Նա ընդամենը քսաներեք տարեկան էր, երբ աքսորվեց: Ուրալյան լեռնաշղթայի ստորոտում նա մոտիկից ծանոթացավ աշխատավոր ժողովրդի կյանքին: Գերցենը պայքարի կոչ էր անում ինքնակալության դեմ, ճորտատիրական իրավունքի դեմ: Նա երազում էր տեսնել Ռուսաստանը ազատ ու երջանիկ: Անճկուն ռևոլյուցիոները իր ձգտումները արտահայտեց «Ո՞վ է մեղավորը», «Գող կաչաղակը» և ուրիշ գրվածքներում:

Աքսորները, երկար թափառումները և հայրենիքի կարոտը մաշում էին Գերցենի սիրտը: Բայց նա մինչև վերջը հավատարիմ մնաց իր գործին:

Ռուս մեծ գրողի ու մարտիկի ձգտումներն իրականացան մեր օրերում: Նրա հայրենիքը այժմ ազատ ու երջանիկ երկիր է դարձել և աշխարհի խաղաղության հզոր պատվարն է:

### ՍԱՌՑԱՄԱՐՏԸ

Ռուս մեծ զորավար Ալեքսանդր Նևսկու փառքը տարածվել էր իր երկրի սահմաններից դուրս: «Հաղթանակով նա անհաղթ է» հպարտանում էին ռուս մարդիկ: Այդ դուր չէր գալիս Նովգորոդի բոյարներին: Նրանք ձգտում էին սահմանափակել Նևսկու իշխանությունը: Նա ստիպված էր հեռանալ Նովգորոդից:

Գերմանացիները օգտվեցին Նևսկու բացակայությունից: Նրանք մտան Նովգորոդյան երկրի սահմանները: Ասպետները շարժվում էին դեպի մեր հայրենիքի խորքը:

Հայրենասեր զորավարը նորից Նովգորոդ եկավ:

— Իշխան Նևսկուն դատարկ ձեռքերով էլ կբռնենք,— պարծենում էին գերմանացի շուն ասպետները: Նրանք արդեն գրավել էին Պսկով քաղաքն ու նրա շրջակայքում համար դիրք բռնել: Վախկոտ բոյարները



սարսափահար փախչում էին: Բայց ռուս մարդիկ ոտքի էին ելել պաշտպանելու իրենց հայրենիքը: Նրանց ղեկավարում էր Նևսկին:

Մի առավոտ գերմանացիներն սկսեցին հարձակումը և մի քիչ առաջ շարժվեցին: Ալեքսանդր Նևսկին դիրք բռնեց Չուդ լճի վրա: Սկսվեց սառցամարտը՝ մեծ կռիվը սառույցի վրա: Բախվող նիզակներն ու տեգերը փշրվում էին արևի տակ: Լսվում էր զենքերի շառաչը, վիրավորների տնքոցը: Սառույցը ծածկվեց արյունով: Ռուսները հերոսաբար էին կռվում: Ճակատամարտը վերջացավ ռուս ժողովրդի փայլուն հաղթանակով: Գերմանացիները շտապեցին հաշտություն կնքել: Նրանք վերջնականապես հետ շպրտվեցին ռուսական սահմաններից:

### Չ. ԴԱՐՎԻՆ

— Դու մտածում ես միայն որսի, շներ ու մկներ բռնելու մասին: Դու կխայտառակես քեզ և մեր ամբողջ ընտանիքը,— նախատում էր հայրը փոքրիկ Չարլզին: Նա երազում էր որդուն անվանի բժիշկ դարձնել. բայց Դարվինին հրապուրում էր մի այլ աշխարհ: Նա ծնողներից թաքուն շատ էր փախել ծովափ, բնության գիրկը և միայն ուշ երեկոյան տուն վերադարձել: Ամեն անգամ նա տուն էր բերում կենդանիների ու բույսերի զանազան տեսակներ:



Մի անգամ անգլիական «Բիգլ» կոչվող նավը պատրաստվում էր նավարկություն կատարել աշխարհի շուրջը: Դարվինի ուսուցիչ Հենսլոն իր աշակերտին առաջարկեց մասնակցել այդ ճանապարհորդությանը: Դարվինի ուրախությանը չափ ու սահման չկար: Բայց այս անգամ էլ հայրը դեմ գնաց որդու ցանկությանը: Միայն բարեկամների միջամտությունը կոտրեց հոր համառությունը:

1831 թվի դեկտեմբերի 27-ին «Բիգլ» նավը դուրս եկավ Դևոնպորտ նավահանգստից: Էքսպեդիցիան մեկնեց Պատագոնիա և Հրո երկիրը: Դարվինը եղավ Հարավային Ամերիկայում, Գալապագոսյան կղզիներում: Նա ուսումնասիրեց այդ վայրերի կենդանական ու բուսական աշխարհը: Երբ Դարվինը վերադարձավ հայրենիք, գրեց «Տեսակների ծագումը» աշխատությունը: Այդ գիրքը դուր չեկավ բուրժուական գիտնականներին, որովհետև Դարվինը փորձերով ցույց էր տալիս, որ կենդանական ու բուսական աշխարհը միանգամից չի առաջացել, այլ՝ աստիճանաբար:

Միայն մեր երկրում արժանի ձևով գնահատվեց այդ հանճարեղ գիրքը: Մեծ գիտնականներ Միչուրինը, Տիմիրյազևը և ուրիշները մի նոր աստիճանի բարձրացրին Դարվինի ուսմունքը: Սովետական գիտնականները այսօր նորանոր հայտնագործություններով հարստացնում են մեծ գիտնականի ուսմունքը:

Գինը 2 ռ.

# ԻՆՉ ՎԵՐՑՆԵԼ ԱՐՇԱՎԻ ԳՆԱԼԻՍ



## ԱՆՀԱՏԱԿԱՆ ՀԱՆԴԵՐՁԱՆՔ




## ԽՄԲԱԿԱՆ ՀԱՆԴԵՐՁԱՆՔ




## ԱՆՀԱՏԱԿԱՆ ՀԱՆԴԵՐՁԱՆՔ




